


ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ԼԹ. ՏԱՐԻ 1925 | Տարեկան՝ 1 ստեռլինգ: | ԹԻՒ 5—6 ՄԱՅԻՍ—ՅՈՒՆԻՍ

## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

---

## ԱՆԾԱՆՕԹ ԷՋԵՐ ՄԱՇԹՈՑԻ ԵՒ ՆՐԱ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻ ԿԵԱՆՔԻՑ ԸՍՏ ՕՏԱՐ ԱՂԲԻՒՐՆԵՐԻ

Հայ գրի եւ գրականութեան հիմնադիրների կեանքը ծանօթ չէ այն չափով, որքան արժանի էին նրանք յիշողութեան իրենց մեծ գործով։ Լրիւ չեն տեղեկութիւնները մանաւանդ այն նշանաւոր մարդու մասին, որ առաջինն է զգացել սեփական գիր ունենալու պահանջը եւ հիմք ձգել ազգային դպրութեան։

Զարմանալին այն չէ, որ յետինները չգիտէին — ժամանակի խրամատով անջատուած — սքանչելի գիւտի եւ նրա մեծ վաստակաւորի պատմութիւնը։ Նոյն իսկ ժամանակակից Կորիւնը չի կարող պարծենալ առանձին գիտութեամբ։ Թէեւ Մաշթոցի ձեռնասուն աշակերտը եւ նրա կենսագիրը, նա գրերի մասին շատ բան չգիտէ, գոնէ շատ բան չի պատմում։ Նորա հետաքրքրում է կարծես ոչ այնքան գիւտը, որքան Մաշթոցի քարոզչութիւնը եւ այն էլ Հայաստանի ծայրագաւառներում եւ Աղուանից եւ Վրաց աշխարհներում։ Այս հանգամանքը ընդունակ է իրաւամբ կասկածներ յարուցանել։ Սակայն մեր նպատակը չէ Կորիւնի գործը քննել։

Յոյն եւ լատին հին յիշատակարաններում կան քանի մի ակնարկներ եւ տեղեկութիւններ, որոնք, որքան եւ դիպուածական եւ հատուկտոր, բայց եւ այնպէս անսպասելի լոյս են ցօղում Մաշթոցի եւ իւրայինների կեանքի մի կարեւոր շրջանի վերայ։ Գուցէ եւ նրանք թոյլ տան բարձրացնելու այն քօղը, որ թւում է թէ ձգած է Կորիւնի երկի մէջ ոչ միայն Մաշթոցի այլ եւ իր Կորիւնի որոշ գործունէութեան վերայ։

Յոյն եկեղեցու պարծանք Փոտ պատրիարքը, յայտնի է, քաղաքակիրթ աշխարհի առաջ մեծ երախտիք ունի շնորհիւ իր հռչակաւոր "Գրադարանի„։ Նրա փառքին մասնակից ենք, ի դէպ է ասել, հայերս, քանի որ Փոտի երակների մէջ վազում էր առատօրէն հայի արիւն, որովհետեւ Արշաւիր պատրիկի քեռորդին էր։ Ընթերցասէր պատրիարքը կազմել էր հին հեղինակների ճոխ ժողովածու, որի շնորհիւ նորա տունը կիրթ հասարակութեան կենդրոն էր։ Նա սովորութիւն ունէր կարդացած գրքերի մասին հաշիւ գրել, նշանակելով նրանց բովանդակութիւնը երբեմն համառօտ, յաճախ մանրամասն։ Այս կերպով կազմուել է նրա "Գրադարան„ աշխատութիւնը, որն ամփոփում է մօտ 300 հեղինակութիւններ։ Կան գործեր, որ կորել են, գոնէ մինչեւ այժմ չեն յայտնուել եւ նրանց թիւը քիչ չէ եւ շատերի մասին գաղափար ունենք միմիայն լուսամիտ պատրիարքի աշխատութեան շնորհիւ։

Ահա այդ Գրադարանումն է, որ Փոտը յիշում է Թէոդոր Մոպսուեստացու կամ Մամուեստացու, ինչպէս մերոնք էին ասում, մի գործը հետեւեալ խօսքերով, որ բերում ենք ամբողջապէս, բնագրի հետ տալով եւ բառացի թարգմանութիւնը։

Bib. Photii. 81 (P. G. 103, col. 231).

| Θεοδώρου πρεσβυτέρου | Թէոդոր Երէցի |
| --- | --- |
| περὶ τῆς ἐν Περσίδι μαγικῆς ἐν λόγοις γ΄. Ἀνεγνώσθη βιβλιδάριον Θεοδώρου περὶ τῆς ἐν Περσίδι μαγικῆς καὶ τίς ἡ τῆς διὰ εὐσεβείας διαφορὰ ἐν λόγοις τρίσι. | Յաղագս որ ի Պարսս մոգութեան, ի ճառս երիս. Կարդացել եմ Թէոդորի գիրքը յաղագս որ ի Պարսս մոգութեան եւ զինչ որ ի բարեպաշտ հաւատոյ զանազանութիւն <նորա>, յերիս ճառս։ |
| Προσφωνεῖ δὲ αὐτοὺς πρὸς Μαστούβιον ἐξ Ἀρμενίας ὁρμώμενον, χωρεπίσκοπον δὲ τυγχάνοντα. | Ուղղուած են նրանք առ Մաստուբիոս ծագումով Հայաստանից եւ ինքն քորեպիսկոպոս։ |
| Καὶ ἐν μὲν τῷ πρώτῳ λόγῳ προστίθεται τὸ μιαρὸν Περσῶν δόγμα, ὃ Ζαράδης εἰσηγήσατο, ἤτοι περὶ τοῦ Ζουρουάμ, οὗ ἀρχηγὸν πάντων εἰσάγει, οὗ καὶ Τύχην καλεῖ καὶ ὅτι σπένδων, ἵνα τέκῃ, τὸν Ὁρμίσδαν, ἔτεκεν ἐκεῖνον καὶ τὸν Σατανᾶν· καὶ περὶ αὐτῶν αἱμομιξίας. | Առաջին ճառում խօսում է պարսից պիղծ կրօնի մասին, որ մուծել է Զարադը, այն է Զրուանի մասին, որին ամէն բանի սկզբնապատճառ է դնում եւ որին անուանում է նաեւ բախտ։ Եւ թէ ինչպէս յաշտ էր անում, որ ծնի Որմզդին, ծնում է եւ սատանային։ Եւ նրանց արենապղծութեան մասին։ |
| Καὶ ἁπλῶς τὸ δυσσεβὲς καὶ ὑπέραισχρον δόγμα κατὰ λέξιν ἐκθεὶς ἀνασκευάζει ἐν τῷ πρώτῳ λόγῳ. | Մի խօսքով ամբարիշտ եւ գարշելի կրօնը մէջ բերելով հերքում է առաջին ճառում։ |
| Ἐν δὲ τοῖς λοιποῖς δυσὶ λόγοις τὰ περὶ τῆς εὐσεβοῦς διέρχεται πίστεως, ἀπὸ τῆς κοσμυγονίας ἀρξάμενος, καὶ περὶ αὐτῆς τῆς χάριτος ὁμοίως καὶ ἐπιτροχάδην διελθών. | Իսկ մնացեալ երկու ճառերում խօսում է բարեպաշտ հաւատի էութեան մասին, սկսելով աշխարհի արարչութիւնից. եւ նմանապէս խօսում է անցողակի նաեւ շնորհի մասին։ |
| Οὗτος ὁ Θεόδωρος ὁ Μοψουεστίας εἶναι δοκεῖ· τὴν δὲ γὰρ Νεστορίου αἵρεσιν καὶ μάλιστα ἐν τῷ τρίτῳ λόγῳ κρατύνων προαναφωνεῖ, ἀλλὰ καὶ τὴν τῶν ἁμαρτωλῶν ἀποκατάστασιν τερατεύεται. | Այս Թէոդորը թւում է որ Մոպսուեստացին է. որովհետեւ Նեստորի աղանդի մասին մանաւանդ երրորդ ճառում հաստատապէս նախադրող է հանդիսանում, այլեւ մեղաւորների վերականգման (արդարացման) մասին է բանդագուշում։ |

Այս տողերը խիստ թանգարժէք են հայ գրականութեան համար։ Կարեւոր է Թէոդորի երկի ոչ միայն բովանդակութիւնն ինքն ըստ ինքեան, այլ եւ նորա հասցէն։ Բովանդակութեանը կը դառնանք ուրիշ առթիւ մի այլ յօդուածում. այժմ կանգ առնենք երկրորդ կէտի, գրութեան հասցէի վրայ։

Արդ յոյն պատրիարքը վկայում է, որ Թէոդորի գիրքը գրուած է եղել մի հայ քորեպիսկոպոսի համար եւ բարեբախտաբար չի մոռացել նշանակել նրա անունը։ Արդեօք ո՞վ է այդ հայ եկեղեցականը, որի անունը հնչում է Mastoubios։ Յիշենք, որ Թէոդոր Մամուեստացին մեռել է 428 թուին եւ եպիսկոպոս էր սկսած 392 թ. մերձաւորապէս։ Հայ դպրութեան ծանօթ անձը բնաւ չի վարանիր Mastubiosին նոյնացնելու Մաշթոցի, Թէոդորի ժամանակակից հայ իրականութեան ամենացայտուն դէմքի հետ։ Հետեւապէս Μαστούβιος ուղղելու է Μαστούζιος կամ Μαστούτζιος։ Անանուն յոյնի καθολικοὶ τῆς Μεγάλης Ἀρμενίας յօդուածում Մաշթոցի անունը հնչում է Μαστίτζη եւ Μαστή(ν)τζη (P. G. 132)։

Յուշի ունենալով հայ Գրականութեան հօր կրկնակի անունը թերեւս ոմանք գայթակղուին կարդալու Μασρούβιος, այսինքն Մեսրոբ։ Սակայն, որքան հաւաստի է Մաշթոց անունը, նոյնքան երկբայելի է Մեսրոբ, աւելի ճիշդ Մեսրոպ։ Հին մատենագիրները, Կորիւն եւ Ղազար, գիտեն միայն Մաշթոց անունը. մինչդեռ Խորենացին է առաջինը, որ Մաշթոցի տեղ գործ է ածում Մեսրոպ։ Ի՞նչ հիմ ունէր մեր պատմահայրը. անյայտ է. մինչեւ խնդրի պարզելը գերադասելի է, անպայման, Մաշթոցը։

Նկատենք, որ Թուղթ Պրոկղեայ եպիսկոպոսի ունի Մաժդոց ընթերցումը, որը կարծես աւելի հին եւ ստոյգ ձեւն է եւ կարող է թելադրել բառի ստուգաբանական ծագումը։ Եթէ ընդունենք, որ Մաժդոցի նախնական հնչիւնը Մազդ-ոց է, ինչ որ անհաւանական չէ, իրաւամբ կարող ենք նոյնացնել իրանական mazd-ak անուան հետ, հայ -ոց փաղաքշական, երեւի մանկիկ յաւելումով[1]։

---

1 Մաժդոցը հետագայում փոխւում է Մաշդոցի, ինչպէս Պրոկլի պատասխանում, Գիրք Թղթոց, էջ 9. Աբրահամ կաթողիկոսի թուղթ առ Կիւրիոն, անդ 180. Օձնեցու ատեն ժողովոց, անդ, 220. Գագիկի թուղթ առ Ռոմանոս կայսր, անդ, 296։

Այն անունը կրում է եւ Ներսէս կաթողիկոսի ժամանակից հայ եպիսկոպոսներից մինը՝ Մաշդոց Խորխոռունեաց եպս. անդ, 70, 73 եւ այլն։

Մաշդոց, դառնում է Մաշթոց, դ > թ, շ-ի ազդեցութեամբ։ Ոց մասնիկը ծանօթ է եւ այլուստ, ինչպէս Տիր-ոց, Բաբ-ոց։ Մաշթ-ոցի նմանութիւնը Mazdakի հետ աւելի քան հաւանական է։ Մաշդ-ոց եւ Մաժդ-ոց եւ Մազդ-ոց ձեւերի միջնորդութեամբ։

Մատուրիոսի քորեպիսկոպոս կոչումը չպէտք է շփոթեցնէ մեզ։ Թէ Մաշթոցը իրօք ինչ աստիճան ունէր, յայտնի չէ. գուցէ իսկապէս քորեպիսկոպոս էր։ Այսպէս էին կոչւում այն եպիսկոպոսները, որ օրինական աթոռ չունէին եւ աթոռակալ եպիսկոպոսի օգնական կամ փոխանորդ էին։ Բառի կազմը, ինչպէս եւ հասկանանք ἐπίσκοπος τῆς χώρας, թէ ὁ ἐν χώρᾳ ἐπίσκοπος ὤν, իմաստը մնում է գրեթէ նոյնը եւ պատշաճաւոր Մաշթոցի շրջիկ գործունէութեան[1]։ Կորիւնը չէ յիշում իր ուսուցչի աստիճանը, իսկ ակումիտ տիտղոսը, ստացած Կ. Պոլսում, ἀκοιμήτης, միայն նոր կասկածների առիթ կարող է տալ։

Եթէ ճիշդ է մեր նոյնացումը, առաջին անգամն է, որ երեւան է գալիս հայ լուսաւորութեան հօր անունը ընդհանուր գրականութեան մէջ։

Հնչական յարակցութիւնը չէ միայն, որ մեզ պատրում է։ Կան եւ պատմական լուրջ հիմքեր, որ գալիս են հաստատելու մեր ենթադրութիւնը։

Թէոդորի եւ Մաշթոցի ժամանակակից ամենախոշոր երեւոյթը ընդհանուր եկեղեցական կեանքում Եփեսոսի ժողովն է։ Մամուեստի եպիսկոպոսը թէեւ թողել էր այս աշխարհը ժողովից երեք տարի առաջ, բայց իր անուան կշիռով եւ մտաւոր ժառանգութեամբ կենդանի մասնակից էր գալոց վէճերի երկար ժամանակ։

Եփեսոսի ժողովի շուրջը ծագած յուզումները արձագանգ գտան եւ Հայաստանում։ Պայքարող կողմերը առանձին արժէք էին տալիս հայերի բռնելիք դիրքին եւ աշխատում էին գրաւել նրանց համակրութիւնը։ Ընդհանուր իրարանցումի ժամանակ կար վայրկեան, երբ հայերը կարծես թէ հանրական ուշադրութեան կենդրոնն էին։ Ազգային յիշողութիւնը պահել է միայն խուլ շշուկն եղելութեանց, որոնց մասին որոշակի ճառում են օտար աղբիւրները։

Եփեսոսի ժողովը փակեց իր նիստերը 431 թուին յունիսի 26 Նեստորի դատապարտումով եւ աքսորով։ Չի կարելի ասել, սակայն, որ սուրբ հայրերի հաւաքական որոշումը սանձահարեց կրքերը եւ նրանք վերադարձան իրենց տեղերը խաղաղութեան ձիթենիով։ Տարիներ էին պէտք, մինչեւ որ բորբոքուած ուղեղները հովանային ընդհանուր խաղաղութեան տենչով։

Կռուող ուղղութեանց պարագլուխները՝ Կիւրեղ Աղեքսանդրացին եւ Յովհաննէս Անտիոքացին մեծ ճիգերից յետոյ համոզուեցին հաշտութեան գալ փոխադարձ զիջումների գնով։ Հաշտութիւնը կայացաւ 433 թուին մարտ ամսին։ Եւ այս կարեւոր դէպքը չզսպեց յուզումները։ Անհաշտ տարրերը շարունակեցին հակառակութիւնները, կազմելով երկու կողմերի ծայրայեղ թեւերը։ Նրանց ոգին էր կիւրեղեանների բանակում Մելետինի եպիսկոպոս Ակակը եւ Եդեսիայի եպիսկոպոս Ռաբուլը։ Անտիոքեանների խմբում յամառողներն էին Կիլիկիայի եպիսկոպոսները, որոնք ժողով գումարեցին Անաւարզում եւ բողոքեցին կայացած միութեան դէմ[1]։ Ակակն եւ Ռաբուլը եւս, իբր հաւատարիմ կիւրեղականներ, վրդովուած էին, որ իրենց պետը զիջանելով մատնել է ճշմարտութեան դատը[2]։

Նեստորի անկումով հալածելի են յայտարարւում ոչ միայն նրա անձը, այլեւ գրուածները։ Հակառակորդները սկսում են տարածել Դիոդոր Տարսոնացու եւ Թէոդոր Մամուեստացու գրութիւնները։ Սրանք էին բանադրուած վարդապետութեան բուն հեղինակները։ Նեստորի հետեւորդների համար սա միեւնոյն ժամանակ մի կողմնակի միջոց էր ցոյց տալու, որ անարդարութիւն էր գործուած իրենց ուսուցչի դէմ, քանի որ նա այլ բան չէ քարոզել, քան ինչ որ դաւանել են յիշեալ հայրերը։

Երեւում է, որ Թէոդորը առանձին հռչակ էր վայելում հայերի մօտ. այս առթիւ է, որ թշնամանող կողմերը հարկաւոր են համարում դիմել հայերին։ Ակակ եւ Ռաբուլ զգուշացնում են, որ Թէոդորի գրուածները խորշելի են եւ աղանդաւոր, իսկ Կիլիկիայի եպիսկոպոսները յայտարարում են, որ Ռաբուլ անձնական ոխ ունի Թէոդորի դէմ։

Այս հակասական քայլերը դժուար կացութիւն են ստեղծում հայերի համար։ Հայ եպիսկոպոսները ժողով են գումարում եւ ճշմարտութիւնը պարզելու նպատակով որոշում են դիմել Կ. Պոլսի պատրիարքին։ Երկու երէց, Ղեւոնդիոս եւ Աբերիոս յանձնարարական նամակով մեկնում են Պրոկլի մօտ։ Նրանք տանում են իրենց հետ նաեւ Թէոդորի գրուածներից քաղուածոյ կտորներ։ Հայերն ուզում են պատրիարքի կարծիքը, թէ ով է արդար. Ակակն ու Ռաբուլը թէ կիլիկեցիք։

1 Յայտնի է Ղազար Փարպեցու գանգատը, որ նրան «այլ եւ քորեպիսկոպոս զք չարար» թող թէ «ձկտեցուցանել յեպիսկոպոսութիւն». Թուղթ Ղազարայ, եջ 587։

1 Mansi, V 891.

2 Անդ V. 860 եւ 998 Ակակի նամակը Կիւրեղին կրկնակի լատին թարգմանութեամբ։

Պրոկլն ընդունելով Հայ դեսպանութիւնը, քննում է ուշադրութեամբ նրանց թղթերը եւ պատրաստում պատասխան։ Միեւնոյն ժամանակ հարկաւոր է նկատում դիմել Աղեքսանդրիայի եւ Անտիոքի պատրիարքներին եւ խնդրում որ նրանք եւս ստորագրեն Հայերին ղրկելիք պատասխանը։ Պրոկլի դիմումը յատուկ նամակով տանում է Անտիոք Թէոդոր անունով մի սարկաւագ։ Յովհաննէս պատրիարքն իր եպիսկոպոսների հաւանութեամբ ստորագրում է թուղթը։

Մի այլ սարկաւագ Վասիլ անունով նոյն յանձնարարականով ուղարկւում է Աղեքսանդրիա եւ բերում է Կիւրեղի պատասխանը։

Մինչ այն պատրիարքն արդէն ղրկած է լինում իր դաւանաբանական թուղթը Հայերին։ Ինչպէս երեւում է, Պրոկլը բաւականանալով Անտիոքի վերաբերումով աճապարում է հասցնել թուղթը Հայերին, առանց սպասելու Կիւրեղի կարծիքին։ Բայց, անտարակոյս, զգուշութեան համար ձեռնպահ է մնում որեւէ ակնարկ անել Թէոդորի հասցէին։

Այս անցուդարձին վերաբերեալ վաւերագիրները, դժբախտաբար, կորած են մեծ մասով։ Մնացել են միմիայն Պրոկլի թուղթը Հայերին յոյն, հայ եւ ասորի լեզուներով. մնացել են նաեւ Ակակի թղթերը Հայոց եւ նրանց պատասխանները միմիայն հայերէն։

Լատին մատենագիր Լիբերատը, ինչպէս երեւում է, ունեցել է իր տրամադրութեան տակ կորած վաւերագիրներից շատերը եւ չի զլացել հակիրճ բայց բովանդակալից հաշիւ տալ իր երկի մէջ։ Շնորհապարտ պիտի լինենք հեռաւոր Կարթագէնի եկեղեցականին, որ անտես չի արել եւ Հայոց հարցը։ Սարկաւագ Լիբերատը յիշեալ եկեղեցու կողմից մասնակցել է իր ժամանակուայ շատ ժողովների եւ ներկայ է եղել նաեւ տիեզերական Ե. ժողովին 553 թ. Թէոդոր Մամուեստացու, ինչպէս եւ Թէոդորիտի եւ Իբասի խնդիրը նոյն ժողովի քննութեան եւ ապա դատապարտութեան առարկայ եղաւ։ Երեք անձերը, կամ ինչպէս ասւում է եկեղեցական պատմութեան մէջ, երեք գլուխները, դատւում էին առ Նեստոր ունեցած յարաբերութեան տեսակէտից։ Բնականօրէն ժողովը աչքի պիտի անցնէր նրանց վերաբերեալ գրութիւններն ու թղթերը Եփեսոսեան վէճերի ժամանակից։ Յետագայում նրանցից շատերը կորստեան են մատնուել եւ մանաւանդ այն թղթերը, որ նայում էին Հայերիս։ Լիբերատը օգտուել է նրանցից եւ տեղ տուել իր երկի մէջ, որ ամփոփում է եկեղեցական անցքերի պատմութիւնը 428—553 թ. վերեւ յիշեցինք, ինչ որ նա պատմում է Հայոց մասին։ Պիտանի ենք համարում մէջ բերել եւ նրա բուն խօսքերը բնագրով եւ թարգմանութեամբ։

Liberati diaconi Breviarium, P. L. 68, col. 963.

| | |
|---|---|
| Nestorii sectatores... aiebant non sapuisse nova Nestorium, sed antiquorum patrum prosecutum fuisse doctrinam et in eo tantum studii gesserunt, ut ipsa eorum volumina malitiose in Syrorum linguam et in Armenorum atque Persarum transferrent. | “Նեստորի աղանդակիցները... ասում էին, որ Նեստոր նոր բան չէ քարոզել, այլ հին հայրերի վարդապետութիւնն է հետեւել։ Եւ այնքան եռանդ թափեցին, որ մինչեւ անգամ նրանց իսկ գրուածները չարամտօրէն թարգմանեցին ասորի, հայ եւ պարսիկ լեզուներով։ |
| Sed haec ubi agnoverunt Acacius Melitenensis et Rabula Edessae civitatis episcopus... scripserunt Armeniae episcopis, ne Theodori Mopsuesteni libros susciperent tanquam haeretici et auctoris dogmatis Nestoriani, insimulantibus episcopis Ciliciae Rabulam et Acacium, quod hoc non ex charitate, sed ex emulatione atque contentione fecisssent. | Բայց երբ այս իմացան Ակակ Մելիտինացին եւ Եդեսիայի եպիսկոպոսը Ռաբուլը.. գրեցին Հայոց եպիսկոպոսներին, որ չընդունեն Թէոդոր Մամուեստացու գրքերը, իբր հերձուածողի եւ Նեստորեան վարդապետութեան հեղինակի։ Մինչդեռ Կիլիկիայի եպիսկոպոսները ամբաստանում էին Ռաբուլին եւ Ակակին, որ նրանք այդպէս են վարուել ոչ սիրուց, այլ նախանձից եւ չարութիւնից դրդուած։ |
| Congregati sunt ergo in unam venerabiles Armeniae episcopi et miserunt duos presbyteros Leontium et Aberium ad Proclum Constantinpolitarum episcopum, secundum morem, cum libellis suis, et uno volumine Theodori Mopsuesteni, scire volentes utrum doctrina Thodori an Rabulae et Acacii vera esse probaretur. | Արդ ժողով են գումարում Հայոց պատուարժան եպիսկոպոսները եւ երկու երէցներ են ուղարկում Ղեւոնդիոս եւ Աբերիոս, Կոստանդինուպոլսի եպիսկոպոսի Պրոկլի մօտ, ըստ սովորութեան, իրենց թղթով եւ Թէոդոր Մամուեստացու գրուածով, կամենալով վերահաստ լինել, արդեօք որն է ընդունելի իբր ճշմարիտ Թէոդորի թէ Ռաբուլի եւ Ակակի ուսմունքը։ |
| Itaque Proclus accipiens Armeniae episcoporum libellos et illud Theodori volumen, diligentius utraque examinans, tomum Armeniis scripsit et destinavit, in quo posuit, ad interimendas Nestorianorum versutias, qui duas in Christo inducunt personas, „unum de trinitate incarnatum“, | Այսպէս Պրոկլը ստանալով հայ եպիսկոպոսների թուղթը եւ Թէոդորի գրուածը, ուշի ուշով քննեց երկուսն էլ, եւ յետոյ նամակ գրեց Հայերին, որի մէջ ի ջնջումն նեստորականների նենգութիւնների, որոնք “զերկուս ի քրիստոս մուծանէին անձինս„ դրօշմում է՝ “մին յերրորդութենէ մարմնացեալ„։ |

quem et direxit Joanni Antiocheno per Theodorum diaconum suum, continentem subter capitula ab haereticis prolata; expetens ab eo, pro communi fide servanda, ut cum suo concilio eum susciperet et subscriberet.

Joannes autem et qui cum eo erant congregati episcopi, legentes tomum et ejus laudantes compositionem, subscipserunt in eo et Proclo transmiserunt...

Sed Basilius quidam diaconus sumens tomum Procli quem Armeniis scripserat, Alexandriam venit et Armenorum libellos suis libellis annectens, obtulit Cyrillo ejusdem urbi antistiti...

Itaque Basilius diaconus Constantinopolim veniens libellos composuit et archiepiscopo Proclo porrexit, associans cuncta quae ante hac Cyrillo archiepiscopo obtulerat.

Proclus vero iam destinaverat tomum suum Armeniis, in quo tomo nullam facit de Theodoro reprehensionis mentionem.

Quod cognoscens Basilius scripsit libellum in quo docuit libros Theodori vitandos, sicut Arii et Eunomii blasphemias...

Post haec autem occasione accepta surrexerunt quidam monachi ab Armenia Apollinaris sectatores duo vel tres (sicut refert Joannes Antiochenus in epistola sua) portantes excerpta capitula, ut dicebant, de libris Theodori Mopsuesteni, vel aliorum sanctorum patrum, qui in illo tempore, sicut diximus, contra Apollinarem scripserant: et intrantes regiam civitatem et multorum sordidantes auditum calliditate sua omnia perturbabant.

Deinde circumeuntes totius Orientis civitates et universa monasteria, damnanda esse cum auctoribus clamabant accusantes ea Nestoriam sensu fuisse conscripta: „quia si Nestorius juste damnatus est, damnentur et ista, dicebant, cum suis auctoribus“.

*Պրոկլը նամակն ուղարկում է Յովհաննէս Անտիոքացուն իր Թէոդոր*[1] *սարկաւագի ձեռքով, որը պարունակում էր նաեւ քաղուածներ հերետիկոսներից, եւ խնդրում է նորանից, որ յանուն ընդհանուր հաւատի պահպանութեան նա իր եկեղեցու հետ պաշտպան կանգնի եւ ստորագրի։*

*Յովհաննէսն իր ժողովական եպիսկոպոսների հետ միասին կարդալով Պրոկլի նամակը հաւանեցին նրա շարադրութիւնը, ստորագրեցին եւ դարձրին Պրոկլին։*

*Բայց ոմն Վասիլ (Բարսեղ) սարկաւագ, վերցնելով Պրոկլի նամակը, որ գրուած էր Հայոց, մեկնեց Աղեքսանդրիա եւ Հայոց թուղթն իր գրութեան հետ ներկայացրեց Կիւրեղին, նոյն քաղաքի առաջնորդին։*

*Վասիլ սարկաւագը վերադառնալով Կոստանդնուպոլիս, կազմեց մի թուղթ եւ յանձնեց Պրոկլ արքեպիսկոպոսին, կցելով նրան այն ամէնը, ինչ որ դրանից յառաջ տուել էր Կիւրեղին։*

*Սակայն Պրոկլն արդէն ղրկել էր իր թուղթը Հայերին, որի մէջ Թէոդորի վերաբերեալ ոչ մի յանդիմանական յիշատակութիւն չէր արած։*

*Այս բանը իմանալով Վասիլը մի թուղթ գրեց, որով յորդորում էր խորշել Թէոդորի գրքերից այնպէս, ինչպէս Արիոսի եւ Եւնոմի ամբարշտութիւնից...։*

*Այնուհետեւ առիթից օգտուելով եկան Հայաստանից քանի մի վանականներ, Ապոլինարի հետեւորդ, երկու թէ երեք հոգի (ինչպէս հաղորդում է Յովհաննէս Անտիոքացին իր նամակում) եւ առնելով իրենց հետ քաղուածներ, ինչպէս իրենք էին հաւաստացնում, Թէոդոր Մամուեստացու եւ կամ այլ սրբազան հայրերից, որոնք այս ժամանակ որպէս յիշեցինք, գրել էին Ապոլինարի դէմ եւ մտնելով թագաւորանիստ քաղաքը եւ շատերի ունկնդրութիւնը ապականելով իրենց նենգութեամբ խռովեցին ամէն ինչ։*

*Ապա շրջելով ամբողջ Արեւելքի քաղաքները եւ բոլոր մենաստանները պահանջում էին, որ դատապարտուեին այդ քաղուածները իրենց հեղինակների հետ միասին, յանդիմանելով, որ նրանք գրուած են նեստորական ոգով “թէ Նեստորը արդարացի է դատապարտուած, թող դատապարտուին եւ սրանք, ասում էին նրանք, իրենց հեղինակներով„։*

*Հիմք չկայ բնաւ կասկածելու լատին սարկաւագի ճշմարտախօսութեանը ոչ մի կէտում, ոչ մի տողում։ Ազգային աղբիւրները, որքան եւ պակասաւոր, հաստատուն կռուան են տալիս ստուգելու եւ լուսաբանելու օտարի տեղեկութիւնները։*

*Մելիտինի եպ. Ակակն իր թղթում գրում է՝ “զահի հարեալ թէ զուցէ եւ ի ձեր եկեղեցիսդ արատ գտեալ ճարակեսցի, լուեալ համարեցաք ազդել առ ձեզ զհասարակաց աւգուտն խորհելով„։ Խօսքը նեստորականութեան մասին է։ Թղթի վերջում պարզում է Ակակն իր քայլի իսկական շարժառիթը։*

*“Բայց մեզ երկիւղ է թէ՝ զուցէ ի Թէոդորեա Մամուեստեայ ոմանք աշակերտեալ ոք գտցի եւ ի չար ժանգէն Նեստորի ի միամիտ անձինս ազդիցէ։ Զի զնորա մնացեալ գրեանն իբրեւ խնդիրս այս յայտնեցաւ եւ մանաւանդ որ վասն մարմնախառնին գրեալ էր, վճիռ հրամանի ետուն սուրբ աշխարհաժողով եպիսկոպոսացն որ յԵփեսացւոց քաղաքին եղեւ ի մի վայր ժողովել զբնաւ գրեանն եւ այրել։ Արդ փոյթ լիցի ձեզ առանց պղտորութեան զհաւատսն պահել, զի կատարեալ զարդարութիւնն անապական ընկալջիք„*[1]։

*Փարիս։* ՊՐՈՖ. Ն. ԱԴՈՆՑ

*(Շարունակելի։)*



[1] *Յովհաննէս Անտիոքացին Պրոկլին գրած նամակում անուանում է սարկաւագին Թէոդոսիոս* (diacono Theodosio) P. G. 65, col. 877։

[1] *Գիրք Թղթոց, էջ 14։*




ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ԼԹ. ՏԱՐԻ 1925 | Տարեկան՝ 1 ոսկեդրամ: | ԹԻՒ 7—8 ՅՈՒԼԻՍ—ՕԳՈՍՏՈՍ

## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

---

## ԱՆԾԱՆՕԹ ԷՋԵՐ ՄԱՇԹՈՑԻ ԵՒ ՆՐԱ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻ ԿԵԱՆՔԻՑ ԸՍՏ ՕՏԱՐ ԱՂԲԻՒՐՆԵՐԻ

*(Շարունակութիւն:)*

Պրոկլ պատրիարքի Հայոց համար գրած թղթի հայերէն օրինակը խրատական է։ Նա ցոյց է տալիս թէ ինչպէս էին այլայլւում պատմական վաւերագիրները դաւանաբանական վէճերի տաքացած մթնոլորտում։

Պրոկլի Նամակի յունարէն բնագիրը, որ տպուած է Mansi, Թ. հատորում եւ արտատպուած Migne, P. G. 65, 856, հաշւում է Ա—ԺԵ գլուխ։ Հայերէն թարգմանութիւնը, որ զետեղուած է "Գիրք Թղթոց„ յիշատակարանում, տասնեւհինգ գլուխներից պահել է միայն Թ—ԺԵ։ Ասորի թարգմանութիւնը պահուել է Զաքարիա Հռետորի Եկեղեցական պատմութեան մէջ[1]։ Սա եւս մեզ հետաքրքրող կէտերում զանազանւում է յունարէնից, բայց չի մօտենում էապէս հային։ Մեր նիւթը պահանջում է կանգ առնել մի վայրկեան այս կարեւոր թղթերի քննութեան վրայ։

Յոյն բնագիրը վերջին ԺԵ. գլխում ասում է. ταῦτα δὲ πρὸς τὴν ὑμετέραν ἐπεστείλαμεν ἀγάπην ἐκ τῶν ὑμετέρων προτραπέντες λιβέλλων, ὧν πρὸς ἡμᾶς διεπέμψασθε, φήσαντες λυμεῶνάς τινας καὶ τερατολόγους ἀνθρώπους ἑαυτοὺς ἐπειφρῆσαι τῇ ὑμετέρᾳ χώρᾳ βουλομένους διὰ πονηρῶν γραμμάτων καὶ τῶν ἀντισθέσεων τῆς ψευδωνύμου γνώσεως διαστρέφειν τὸ ἁπλοῦν καὶ ἀμαγγάνευτον τῆς ὀρθοδόξου πίστεως κάλλος.

Հայը թարգմանում է. "Եւ զայս ամենայն զի գրեցաք առ ձեր սէր այդր, զի լու եղեւ մեզ եթէ արք ոմանք ժանդախառք, ցնորախառք անկան [ի] յաշխարհ այդր եւ կամին ժանդաժուտ[1] իմն գրովք, հակառակութեամբ ստաբան [խ]ոտախորհուրդ գիտութեան[2] խոտորել զպարզամտութիւն, զանպաճոյճ զանմեքենայ, զուղղափառ գեղն հաւատոյն[3]„։

Բնագրի ընդգծուած տողերը, որ նշանակում են. "գրում ենք դրդուած ձերդ թղթից, որ ղրկել էիք մեզ„, թողնուած են հայ թարգ-

---

1 Die sogenannte Kirchengeschichte des Zacharias Rhetor, ed. Ahrens u. G Krüger, 1899, Teubnerի շարքում։ Անգլիերէն թարգմ. The Syriac Chronicle of Zacharia of Mytilene, ed. Hamilton and Brooks, 1899.

1 Յուն. ժանդաժող = πονηρός, զոր Վարդանեան ուղղել է ժանդաժուտ, WZKM, 1913, էջ 422 եւ Հանդ. Ամս. 1920։

2 Յուն. գիտութեամբ, ուղղելի է գիտութեան = γνώσεως։

3 Զուղղափառ ὀρθόδοξον, թէ պէտք է կարդալ հաւատոյն գեղն։

մանութեան մէջ։ Յունարէնից երեւում է, որ պատրիարքի գրութիւնը մի պատասխան է այն դիմումին, որ արել են հայերը։ Մինչդեռ հայն այնպէս է ձեւացնում, իբր պատրիարքից է ծագում նախաձեռնութիւնը, որը լսելով — «լու եղեւ մեզ» — հաւատին սպառնացող վտանգը, հարկ է տեսել զգուշացնել թղթով հայերին։

Ասորի թարգմանութիւնը եւս ձգած է յիշեալ տողերը, բայց չի փոխարինել ուրիշ բանով։ Ասորին նայում է թղթի վրայ իբրեւ մի կարեւոր դաւանաբանական գրութեան եւ հանել է այն տողերը, որպէս զի թղթին ընդհանուր բնաւորութիւն տայ եւ ոչ լոկ հայկական։ Երեւի, նոյն նպատակով է, որ մի կողմ է նետել եւ սկզբի ներածական խօսքերը.

I. Οὐ μετρίως, ἀδελφοί, συνέχειν ἡμῶν τὴν ψυχὴν καὶ τὸν λογισμὸν τῇ τυράννῳ λύπῃ καὶ ἔτρωσεν ἡ φήμη τῶν νεαρῶν τῆς ἀπάτης ζιζανίων, ἅπερ ἔναγχος τῇ ὑμετέρᾳ πανούργως ἐπέσπειρε χώρᾳ ὁ κοινὸς τῆς φύσεως ἐχθρός.

Հայերէնի մէջ եւս պակասում են այս խօսքերը, ինչպէս եւ հետեւեալ ութ գլուխները եւ նրանց փոխարէն գտնում ենք հայ ինքնասիրութիւնը շոյող յառաջաբան։ Թւում է, որ եւ այս կէտում օտար ձեռք է սահել Պրոկլի թղթի վրայից։

Բարեբախտաբար Կնիք հաւատոյ կարեւոր գործը, որ վերջերս լոյս տեսաւ Էջմիածին, լրացնում է թերի գլուխներից Գ—Թ եւ պարզում է յառաջաբանի ծագումը։ Սակայն պիտի խոստովանենք, մեր կասկածները դեռ չեն փարատւում ողջովին։

Նոր ստանալով շնորհակալութեամբ Մեսրոբ արքեպիսկոպոսից Կնիք հաւատոյ եւ ծանօթանալով Հ. Վարդանեանի յօդուածին, ՀԱ. 1921 թ. շնորհիւ Հ. Համազասպ Ոսկեանին, չենք կարող անպայման յարել այն կարծիքին, որ պաշտպանում է Կարապետ եպիսկոպոսը իր ներածութեան մէջ եւ որին համամիտ է Հ. Վարդանեանը։

Վերջինս ընդունում է, որ Եզնիկի «առ սուրբ Սահակ հայոց հայրապետ եւ առ սուրբ Մաշդոց մեղայականը» թղթերի անկումով կամ ետեւառաջութեամբ խառնուել են Պրոկլի թղթին եւ կազմել մէկ ամբողջութիւն ու Եզնիկ անունն էլ տեղի է տուած Պրոկլի։ Միանգամայն հնարաւոր է։

Սակայն խնդիրն այն է, որ Եզնիկի թուղթը գրուած է միմիայն Մաշթոցին, ինչպէս վկայում է Կնիքը («զոր գրեաց ի Կ. Պոլիս առ երանելին Մաշդոց», էջ 130) եւ հաստատում է թղթի ոճը, ուր խօսում է եզակի դէմքով («աղաւթից քոց [իմա աղաւթիւք քո] տեառն սրբութեան» ընթերցումը գերադասելի է քան «աղաւթիւք ձեր» Կնիք, 130)։ Հետեւապէս, քանի որ Պրոկլի խառնակուած թուղթը սկսւում է Եզնիկի յառաջաբանով, պէտք էր սպասել, որ վերնագիրը եւս լինէր Եզնիկ առ Մաշդոց։

Միւս կողմից Եզնիկը թուղթը հասարակ մեղայական չէ եղել։ Կնիք ի մէջ նորա անունով մի դաւանաբանական հատուած կայ (էջ 51), որ հաւանօրէն առնուած է նոյն առ Մաշթոց թղթից։ Երեւում է, որ նրա թուղթը անդրանիկ հաշիւ է այն խնդիրների, որոնց համար հայերը սպասում էին Պրոկլի գրութեան։ Գուցէ եւ Եզնիկն է վերջինիս բերողը եւ թարգմանիչը (ուրիշ տեղ նկատել ենք թղթի «աչք բժարեր» նախադասութեան նմանութիւնը Ընդդէմ աղանդոցի սկզբի «զաղտն եւ զբիծն» եւ այլ)։

Եզնիկի եւ Պրոկլի թղթերը սերտօրէն կապուած են միմեանց եւ բնաւ արհամարհելի ենթադրութիւն չէ, որ մէկի յառաջաբանը կամաւ կցուէր միւսին մի ամբողջութիւն կազմելու եւ Պրոկլի բերանը դնելով Եզնիկի խօսքերը Սահակի եւ Մաշթոցի հեղինակութիւնը բարձրացնելու համար։ Աւելորդ կասկածամտութիւն չէ, քանի որ օտար միջամտութեան հետքերը Պրոկլի թղթում անուրանալի են։ Ուշագրաւ է այս տեսակէտից եւ նրա վերջաբանութեան մի կտորը, որ չկայ յունարէնում, եւ ուր յիշւում են Նեստոր եւ Թէոդոր («եւ մի ի նզով ի դժոխս կործանեսցի»)։ Այս խորթ յաւելումը արդեօք նոյն եզնկեան թղթից չէ՞ առնուած։ Ինչ եւ լինի նրա ծագումը, անպայման, միտումաւոր յաւելուած է[1], որ նպատակ ունի ընդ առաջ գնալ Սահակի եւ Մաշթոցի պատասխան-թղթի մի կարեւոր կէտին։

Սրանք իրենց պատասխանում նախ հաւատացնում են, որ միջոցներ են ձեռք առնուած մոլորութեան դէմ. «Թղթոյդ տրտմակից եղեալ... յամենայն տեղիս որ շուրջ զմեւք բնակեալ էին յղեցաք մեծ եւ պատուհասալից պատուիրանաւ մի լսել բնաւ ամենեւին զայդպիսի բարբարոսս

---

1 Ջնդոյեան, որ ըստ Հ. Վարդանեանի (ՀԱ. 1921) հրատարակել է Պրոկլի թուղթը 1890 ին Պատկեր թերթում, կարծում է, որ յաւելուածը պատկանում է Լիբերատի մօտ յիշուած Բասսեղ սարկաւագին։ Բասսեղը հայ շրջաններին մօտ մարդ է. նորա ազդեցութեամբ կարող էր Եզնիկ յիշել այն անունները, որից այնպէս խուսափում էր զգուշաւոր Պրոկլը, եթէ ընդունենք, որ յաւելուածը Եզնիկից է առնուած։ Այս մտքով իրաւացի է Ջնդոյեանի կարծիքը։

(երեւի, բորբորիտս), մի՛ ընդունել ամենեւին զվնասաբեր կորստական մոլորական հերեսիութեան վարդապետութիւնն" (էջ 10)։

Իսկ թղթի վերջում յայտարարում են. "Եւ որ Թէոդորեայ Մամուեստացւոյ աշակերտեալք իցեն առ ժամանակս ի շնորհացն Աստուծոյ այնպիսի ինչ աստ չեւ է յայտնեալ, ապա թէ իցէ ծածկեալ ի ժանգոյ աղտեղութեան, ի հարկէ ջան լիցի մեզ խլել զխոշն եւ զգայթակղութիւնն զայն ի միջոյ ի բաց կորուսանել" (էջ 13)։

Օտարոտի են Թէոդորի հասցէին ուղղուած խօսքերը։ Երեւում է, որ որոշ հարցի պատասխան է։ Սակայն Պրոկլի թղթում այդպիսի հարց չկայ, եւ Թէոդորի անունը չի յիշւում։ Ակամայից կասկած է ծագում պատասխանի հարազատութեան դէմ։ Աւելի ճիշդ ասած, թւում է թէ ուրիշ թղթի պատասխան է, յարմարացրած Պրոկլի թղթին։

Եւ յիրաւի։ Մելիտինի եպիսկոպոս Ակակի "Թուղթ առ սուրբ Սահակ հայոց հայրապետ" գրութեան մէջ, կարդում ենք.

"Բայց մեզ երկիւղ է թէ գուցէ ի Թէոդորեա<յ> Մամուեստեայ ուսմանէն (յօրին. ոխմանէն) աշակերտեալ ոք գոցի եւ ի չար ժանգէն Նեստորի ի միամիտ անձինս ազդիցէ. զի զնորա մնացեալ գրեանն, իբրեւ խնդիրս այս յայտնեցաւ եւ մանաւանդ որ վասն մարմնախաւուինն գրեալ էր, վճիռ հրամանի ետուն սուրբ աշխարհաժողով եպիսկոպոսացն որ յԵփեսացւոց քաղաքին եղեւ ի մի մի վայր ժողովել զբնաւ գրեանն եւ այրել" (էջ 15)։

Անտարակոյս, Ակակի այս երկիւղն է այն խնդրելի կէտը, որ պարտաւորացրել է յիշեալ վիճելի պատասխանը։ Ուրեմն Պրոկլի թղթի պատասխանը նկատի ունի Ակակի եւ ոչ Պրոկլի թուղթը։

Մեզ հասած է, սակայն, եւ Ակակի թղթի պատասխանը։ Խնդիրն այն է, որ այդ պատասխանը ոչնչով չի զանազանւում այն թղթից, որ կրում է "պատասխան թղթոյն Պրոկղի" վերնագիրը։ Միեւնոյն գրութեան կրկնակի պատճէններ են ըստ էութեան։ Տարբերութիւնն այն է, որ Պրոկլի պատասխանի մէջ մուծուած է մի հատուած, բաղկացած գլխաւորապէս հաւատոյ հանգանակից։ Բացի դրանից Թէոդորին վերաբերեալ կէտը Ակակի պատասխանում համառօտ է եւ առանց անուան յիշատակութեան, այսպէս. "այլ յաղանդոյն որ գրեցեր գարշել առ ժամանակս ի շնորհս աստուծոյ, այսպիսի ինչ չեւ է հասեալ. ապա եթէ իցէ ինչ ծածկեալ ի ժանգոյ անտի ի հարկէ ջան լիցի խլել զխոշն ի միջոյ" (էջ 18)։

Կարելի էր կարծել, որ միեւնոյն թղթի օրինակներն, որքան եւ անպատեհ, ղրկուած են եւ Պրոկլին եւ Ակակին։ Բայց քանի որ վերեւ պարզեցինք, որ Պրոկլի թուղթն հետեւանք էր հայոց դիմումի եւ իբր դաւանաբանական ճառ հաւատոյ մասին, περὶ πίστεως, թերեւս պատասխանի պէտք չունէր, մնում է ենթադրել, որ թուղթը սկզբնապէս միայն Ակակի համար է եղել պատրաստուած։ Հետագայում նոյն օտար ձեռքը, որ Պրոկլի թղթին այն ձեւն է տալիս, իբր թէ նա է առաջին գրողը եւ հայերը՝ նրան պատասխանողը, նոյն ձեռքը հարկադրւում է կազմել կեղծ պատասխան առ Ակակ թղթի հետեւութեամբ։

Այս տեղի է ունեցել Կոմիտասից յառաջ, քանի որ Կնիք հաւատոյն արդէն ծանօթ է Սահակի եւ Մաշթոցի պատասխան թղթին (էջ 129) Արդեօք այս միջոցի՞ն է մուծուած եւ վերոյիշեալ յաւելուածը Պրոկլի թղթի վերջաբանութեան մէջ, որպէս զի արդարացուին Սահակի եւ Մաշթոցի պատասխանի ակնարկները Թէոդորի հասցէին։ Եզնիկի եւ Պրոկլի թղթերի խառնումը պատահական թէ դիտաւոր Կոմիտասից յետոյ է։ Եթէ ընդունենք, որ դիտաւորեալ է, յաւելուածը պիտի վերագրել այն ձեռքին, որ խառնել է յիշեալ թղթերը, վերցնելով այն Եզնիկից[1]։

Թէոդորի անուան հանդէպ որոշ նրբանկատութիւնը հասկանալի պիտի լինի մանաւանդ եթէ չմոռանանք նրա մերձաւոր ծանօթութիւնը Մաշթոցի հետ։

Մեզ հետաքրքրող թղթերի վրայ նկատելի է Զ. դարի դաւանաբանական վէճերի հեւաւոր ստուերը։ Յայտնի է, որ Եփեսոսի ժողովի գործերը եւս զերծ չեն Ե. տիեզերական ժողովի շնչից։ Վեցերորդ դարի առաջին կիսում, երբ հայ եկեղեցին մարտնչում էր Նեստորականութեան դէմ, բնաւ ցանկալի չէր ցոյց տալ, որ Նեստորի ուսմունքը յայտնի էր հայերին՝ տակաւին հայ դպրութեան արշալոյսին։ Միանգամայն

[1] Հ. Վարդանեան իր ընտիր սրբագրութեան մէջ հանում է բնագրից միանգամայն "թեանց եւ Մարեթոնեաց" կամ "Մաթեայ եւ Մարաթոփգայ" առեղծուածային անունները։ Թւում է թէ վաղաժամ է։ Երկու անգամ կրկնուող անունները կարող են, եթէ պարզուեն, թերեւս ժամանակագրական նշանակութիւն ունենալ։ Մարաթոնը Նիկոմեդացի եպիսկոպոս էր եւ Մակեդոնի հետեւորդը, ուստի եւ երբեմն նորա անունով է կոչւում Մակեդոնի աղանդը, ինչպէս վկայում է Սոկրատ, Եկ. պատ. II 45: Διὰ καὶ Μαραδωνιανοὺς καλοῦσιν αὐτούς. Յիշւում է նաեւ Ոսկեբերան. Ἄρειος, Εὐνόμιος, Μαραδώνιος, Migne, P. G. 59, col, 569.

խոտելի պիտի թուէր Մաշթոցի եւ կամ Սահակի ծանօթութիւնը Նեստորի ուսուցիչ Թէոդորի հետ։

Ակակի եւ Պրոկլի պատասխան թղթերում մեղմացրած են այն տեղերը, ուր խօսքը Թէոդորի եւ Նեստորի մասին է։ Ինչպէս վերեւ բերած կտորներից կարելի է տեսնել, միանգամ խոստովանում են նեստորականների գործունէութիւնը, ասելով որ ամէն կողմ մարդ է ուղարկուած "մեծ եւ պատուհասալից պատուիրանաւ մի լսել բնաւ ամենեւին զայդպիսի բարբարոսս", իսկ միւսանգամ կարծես ժխտում է. "ի շնորհացն աստուծոյ այնպիսի ինչ աստ չեւ է յայտնեալ", աւելացնելով զգուշութեամբ "ապա թէ իցէ ծածկեալ ի ժանգոյ աղտեղութեան"։

Ակակի երկրորդ թուղթն, ուղղուած Հայ նախարարներին, վկայում է, որ արդարեւ նեստորական քարոզը մուտ էր գործել Հայաստան։ "Աղաչեմք, մի ոք զձեզ խաբեսցէ, գրում է Մելիտինի եպիսկոպոսը, մի՛ պատուականութիւն երեսաց, մի՛ բազմութիւն, մի՛ թողացուսցուք զճշմարիտ հարցն կրաւնս եւ զհաւատ որով հաւատացայքն, որով ապրեցայքն. զայս հարկեցայ գրել առ սէր ձեր. զի ի գալ առ մեզ սիրելեաց մերոց երիցանց Հոնայ, Քոթայ, Անձնայ, պատմել մեզ զքարի գործսն զոր գործիցէք, զի զգրեալսն Դիոդորի կապեցէք, կնքեցէք։ Արդ մի՛ ոք հաւանեցուսցէ զձեզ տալ անդրէն զայնոսիկ, որք փութով եւ տխորժելով ստանան զայն ի կործանումն ստացողաց նոցա եւ լսաւղաց. զի եթէ Նեստորիոս վերացաւ յամենայն եկեղեցեաց, զիա՞րդ Դիոդոր<ի>ն գիրքն եւ ուսումն (յօրին. խումն) ընդունելի իցէ, որք զնոյն միտս եւ միասակարութիւն ունին" (էջ 21)։

Դիոդորը Թէոդորի ուսուցիչն է. վերջերը նրան եւս յայտարարեցին եկեղեցական հայրերը մեղապարտ նեստորականութեան համար։ Սակայն Ակակի ժամանակ կասկածի տակ էր բռնուած Թէոդորը։ Սորա մասին էին գրել հայերին թէ Ակակը եւ թէ Եդեսիայի եպիսկոպոս Ռաբուլը։ Այս երեւում է ոչ միայն Ակակի քանիցս եղած թղթից, այլ եւ Լիբերատի վկայութիւնից, որ բերեցինք վերեւ։ Թէոդորի տեղ Դիոդորի յիշատակութիւնը արժանի է ուշադրութեան։

Դառնանք այժմ Կորիւնին, Մաշթոցի կենսագրին։ Կորիւնին քաջ յայտնի է Թէոդոր Մամուեստացու անուան շուրջը յարուցած աղմուկը։ "Ցայն<մ> ժամանակի, պատմում է Կորիւն, բերեալ երեւեցան Հայաստան աշխարհին գիրք սուտապատումք, ընդունայնախաւս աւանդութիւնք առն ուրումն հռոմի, որում Թէոդ<որ>իոս անուն։ Վասն որոյ սինհոդոսական հայրապետաց եկեղեցեացն սրբոց նշանակեալ ազգ առնէին ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ եւ Մաշթոցի։ Եւ նոցա ճշմարտասէր փութով զայն ի միջոյ բարձեալ աշխարհահալած արտաքոյ իւրեանց մերժեցին, զի մի՛ ի լուսաւոր վարդապետութիւնն ծուխ ինչ սատանայական յարիցէ"։

"Այր ումն հռոմ Թէոդիոս անուն", որ իրաւամբ ուղղելի է Թէոդորոս (թերեւս ձեռագրի Թէոդ̃րոս սխալ ընթերցմամբ Թէոդիոս) ոչ այլ ոք է եթէ ոչ Մամուեստայ յայտնի եպիսկոպոսը։

Այս մասին կասկած լինել չի կարող։ Օտար աղբիւրներից յայտնի փաստերը, որոնց վերայ ծանրացանք վերեւ, հաստատում են Կորիւնի խօսքերը, այլ եւ նոր լոյս են սփռում հայ հեղինակի կցկտուր տեղեկութեան վերայ։ Միւս կողմից Մաշթոցի աշակերտի եւ կենսագրի կարծես ակամայ խոստովանութիւնը Թէոդորի մասին նշանակալից է եւ վկայում է յօգուտ Μαστούβιοςի առաջարկածս սրբագրութեան։

Կորիւնի երկը քննութեան պէտք ունի, որ թողնելու է ուրիշ անգամուայ, որպէս զի չշեղուենք մեր անմիջական խնդրից։ Նկատենք, սակայն, որ Մաշթոցի կենսագիրը շատ հեռու է բաւարարելու այն պահանջներին, որ կարելի առաջադրել մի աշակերտի, որ գրում է իր ուսուցչի կեանքը։ Կորիւնը, որքան ճոռոմաբան, նոյնքան սակաւագէտ է։ Գուցէ եւ աւելի գիտէ, քան յայտնում է մեզ։ Խոստմնալից յառաջաբանը, ուր ուզում է նաւել "զհամատարած ալեօքն վարդապետական ծովուն", նման է շքեղ մուտքի, որ տանում է մի խեղճ տնակ։ Ուստի եւ վերջաբանութիւնը, ուր յայտարարում է, որ "ոչ եթէ ի հին համբաւուց տեղեկացեալ" մատենագրում է, այլ "որոց մեր իսկ ականատես եղեալ", թողնում է բոլորովին հակառակ տպաւորութիւն։

Ականատեսից շատ աւելի կարելի էր սպասել, մանաւանդ այնպիսի խնդրում, ինչպէս է հայ գրի եւ դպրութեան ծագումը։ Մաշթոցն աւելի քան արժանի էր, որ երախտապարտ սերունդը գիտենար նրա կեանքը եւ նշանաւոր յղացման մանրամասնութիւնները։

Պարիս։ ՊՐՈՖ. Ն. ԱԴՈՆՑ

(Շարունակելի։)



# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

---

## ԱՆԾԱՆՕԹ ԷՋԵՐ ՄԱՇԹՈՑԻ ԵՒ ՆՐԱ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻ ԿԵԱՆՔԻՑ ԸՍՏ ՕՏԱՐ ԱՂԲԻՒՐՆԵՐԻ

*(Շարունակութիւն:)*

Դժբախտաբար, Կորիւնի պատմութիւնից յետոյ էլ գրերի գիւտը մնում է գաղտնիք։ Մաշթոցին տանում է Կորիւնը ասորական քաղաքները, Ամիդ եւ այնտեղից Եդեսիա, եւ ուրիշ բան չէ ասում նրա ճանապարհորդութեան եւ կամ նրա ելքի մասին քան այն, որ Եդեսիայում երկար տքնութիւնից յետոյ նրան “պարգեւէր վիճակ յամենաշնորհողէն Աստուծոյ հայրական չափուն ծնեալ ծնունդս նորոգ եւ սքանչելի սուրբ աջովն իւրով նշանագիրս հայերէն լեզուին„։

Եդեսիայից գնում է Մաշթոց Սամոսատ, որպէս զի Հռոփանոս ոմն հմուտ գրիչի օգնութեամբ “զամենայն ընտրութիւնս նշանագրոցն... յօրինեալ եւ յանկուցեալ„ ի թարգմանութիւն դառնայ։

Սամոսատից գալիս է նորէն Եդեսիա եւ տեղւոյն եպիսկոպոսի թղթով իր նորագիւտ տառերով վերադառնում Հայաստան “ի վեցերորդ ամի Վռամշապհոյ արքային հայոց„։ Ղազար Փարպեցու գիտելով, Վռամշապուհ գահ էր բարձրացել պարսից Շապուհ թագաւորի օրով (383—388). Կորիւն, աներկբայ, այլ կարծիք ունի յիշեալ թագաւորի ժամանակի մասին, քանի որ պարզ յայտնում է. “դպրութիւն հայոց յութերորդ ամէ Յազկերտի առեալ սկիզբն„։ Յազկերտն թագաւորել է 399 թուին (պարսկական տարին սկսում էր Օգոստոսի 14ին). ուրեմն, ութերորդ տարին գալիս է 406 Օգոստոսի—407 Օգոստոսի։

Սակայն եւ այս թուի արժէքը նսեմանում է եւ գրեթէ ոչնչանում, երբ Կորիւնը հաւատացնում է, որ Մաշթոցը “երթեալ հասանէր ի կողմանս Արամի ի քաղաքս երկուց ասորոց, որոց առաջինն Եդեսիա կոչի եւ երկրորդն Ամիդ անուն, ընդդէմ լինէր սուրբ եպիսկոպոսացն, որոց առաջնոյն Բաբիլաս անուն եւ երկրորդին Ակակիոս„։

Արդարեւ, արտաքին աղբիւրներից քաջայայտ է, որ Ակակը Ամիդի եպիսկոպոսն էր մօտաւորապէս սկսած 419/420 թուականից։ 420 թուին իբրեւ նոյն քաղաքի եպիսկոպոս ներկայ էր Եահբալահի ժողովին[1]. Թէոդոս կայսեր եւ Վռամ թագաւորի զինական բախումների ժամանակ Ակակը հանդիսանում է նաեւ իբրեւ քաղաքական գործիչ եւ 422ին կայսեր կողմից Վռամի մօտ ղրկւում եւ թերեւս որոշ դեր ունում խաղաղութեան դաշինք կնքելու նոյն թուին (Սոկրատ., Եկ. Պատմ. Է, 21)։

Ինչ վերաբերում է Բաբիլասին, սա ոչ այլ ոք է եթէ ոչ Եդեսիայի հռչակաւոր Ռաբուլ(աս) եպիսկոպոսը. եւ ուրեմն՝ Բաբիլաս ուղղելի է Ռաբիլաս։

Սա եպիսկոպոսական աթոռի վերայ էր 412—435[2] Եփեսոսի ժողովի մասնակից էր. սկզբում Յովհաննէս պատրիարքի, այսինքն, նեստորականների բանակում, բայց յետոյ 431—432ին անցաւ Կիւրեղ Աղեքսանդրացու կողմը, ինչպէս պատմեցինք վերեւ։

Եթէ Մաշթոց Ամիդում ներկայացել է Ակակին եւ Եդեսիայում Ռաբուլին, այդ կարող էր լինել 420ից ոչ յառաջ եւ ոչ ուշ քան 435։ Եւ եթէ իրաւ այդ ճանապարհորդութեան հետ է կապուած տառերի գիւտը, ակներեւ է, որ նա չէր կարող տեղի ունենալ Յազկերտի ութերորդ տարին — ժամանակական անհեթեթութիւն։

Դարձեալ Կորիւնը պատմում է, որ Մաշթոցը ցանկալով նոր գիւտի բարիքը տարածել եւ Հայաստանի յունական բաժնում, ստիպուած է լինել գնալ կայսեր մօտ թոյլտուութիւն խնդրելու։ Եւ զարմանալի է, որ հետը առնում տանում է “զբազմութիւն աշակերտացն ի քաղաքն Մելիտինացւոց եւ յանձն առնէր սրբոյ եպիսկոպոսի քաղաքին, որ Ակակիոսն կոչէին. եւ գլխաւոր աշակերտացն թողոյր զայն, որում Ղեւոնդէոսն կոչէին„։ Իսկ ինքը Դերջանայ Գնիթ եպիսկոպոսի հետ ուղեւորւում է մայրաքաղաք եւ “մտեալ առաջի պատուական աթոռոյն յանդիման լինէր աստուածակարգ թագաւորացն եւ հայրապետին սրբոյ կաթուղիկոսին աշխարհամուտ դրանն, որում Ատտիկոս կոչէին„։

Մելիտինի եպիսկոպոս Ակակը նոյն անձն է, որի մասին խօսեցինք վերեւ, ջերմ Կիւրեղական եւ անվեհեր պայքարող Եփեսոսեան վէճերի ժամանակ Անտիոքեան կուսակցութեան դէմ։

---

1 Chabot, Synodicon Orient, p. 276. Հմմտ. Labourt, Le Christianisme dans l'empire perse, էջ 101.

2 Ըստ “Ժամանակագրութեան Եդեսիոյ„ Ռաբուլ աթոռ է նստել 723ին Սելեւկեան = 412 եւ մեռել է 746, 8 Օգոստ. = 435, 8 Օգոստ., Chronique d'Edesse, Texte und Untersuchungen Harnack, IX, 1.

Ցիշեցինք նրա Թղթերը Հայերին։ Այն գիտնականները, որոնք ամէն կերպ աշխատում են Կիւրեղին քարշել դէպի քաղկեդոնականութիւն, չեն վարանում Ակակին իր անյողդողդ հետեւականութեան համար անուանել միաբնակ։

Հիները ամենայն դէպքում այլ կարծիք ունէին նրա շիտակ գործունէութեան մասին. եւ նրա ուղղամտութեան փայլուն վկայականն այն է, որ թէ յոյն եւ թէ լատին եկեղեցին տօնում են նրա յիշատակը սրբերի շարքում, առաջինը՝ ապրիլի 17ին Τοῦ ἐν ἁγίοις πατρὸς ἡμῶν Ἀκακίου, ἀρχιεπισκόπου Μελιτηνῆς, τοῦ θαυματουργοῦ. իսկ երկրորդը՝ Մարտ ամսի 31ին, նաեւ Սեպտ. 15ին։

Կ. Պոլսի պատրիարք Ատտիկը մեռած է 10 Հոկտ. 425։ Ասել է թէ Մաշթոցը այնտեղ պէտք է եղած լինի 425ից յառաջ, եւ ուրեմն առաջին այցը Ամիդ եւ Եդեսիա ընկնում է ոչ միայն 435ից այլ եւ 425ից յառաջ։ Ի միջոցի 420—425 տարիների Մաշթոց դառնում է Հայաստան եւ “հասեալ ի նոր քաղաքն յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ եւ թագաւորին Հայոց, որում անուն Արտաշէս կոչէին„։

Այնուհետեւ “երկու երանելիները„, Մաշթոց եւ Սահակ սկսում են պարապել թարգմանութեամբ “ըստ յառաջագոյն սովորութեան„. “Որոց դարձեալ դէպ լինէր, պատմում է Կորիւն, եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել ի կողմանս ասորոց ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ եւ երկրորդն Եզնիկ յայրարատեան գաւառէն ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյն զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս հայերէն գրեալս դարձուսցեն„։ Իսկ թարգմանչացն հասեալ ուր առաքեցան եւ կատարեալ զհրամանսն եւ առ պատուական հարսն առաքեալ գնային ի կողմանս յունաց, ուր եւ ուսեալք եւ տեղեկացեալք թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին։

“Ապա յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ դէպ լինէր ոմանց եղբարց ի Հայաստան աշխարհէս դիմել իջանել ի կողմանս յունաց որ եւ Ղեւոնդէս առաջնոյն անուն էր եւ երկրորդին Կորիւն եւ մատուցեալ յարէին յԵզնիկն իբրեւ առ ընտանեգոյն սննդակից ի Կոստանդինական քաղաքին եւ անդ միաբանութեամբ հոգեւոր պիտոյիցն զխնդիրն վճարէին։ Որոց յետ այնորիկ հաստատուն աւրինակաւք աստուածատուր գրոցն եւ բազում շնորհագիր հարց յետ այնր աւանդութեամբք եւ Նիկիական եւ Եփեսոսական կանոնաւք գային երեւելով աշխարհին Հայոց եւ առաջի դնէին հարցն զբերեալ կտակարանս եկեղեցւոյ սրբոյ„։

“Յետ այնորիկ„ եւ “յետ ժամանակի„ անորոշ դարձուածները ցոյց են տալիս, որ կամ պատմիչն անգէտ է եւ կամ չի ուզում ճշգրիտ լինել որեւէ դիտաւորութեամբ։

Ղեւոնդէսի եւ Կորիւնի երթը Կ. Պոլիս կայացած պիտի լինի Եփեսոսի ժողովից յետոյ. եւ ոչ շատ ուշ, քանի որ նորա որոշումները տակաւին չէին հասել Հայերին եւ Ղեւոնդն ու Կորիւնն էին, որ բերեցին։ Տեսանք, որ Լիբերատը յիշատակում է երկու հայի առաքումն ի Կ. Պոլիս Պրոկլ պատրիարքի մօտ, որոնց անուններն են Ղեւոնդէոս եւ Aberium. վերջին անունն, անշուշտ, աղաւաղուած է. Հ. Զամչեանը ուղղում է Աբրահամ առանց որեւէ հիմքի (I, 527)։ Մեզ թւում է, որ Լիբերատի յայտնի դեսպանութիւնը նոյնն է, ինչ որ յիշում է Կորիւնը եւ որին մասնակցել է ինքը։ Ոչ միայն ժամանակը, այլ մանաւանդ Ղեւոնդի անունը երաշխաւորում են մեր վարկածի հաւանականութիւնը։

Ղեւոնդը Վարդանանց պատերազմի հռչակաւոր երէցն եւ նահատակն է։ Պատգամաւորութեան երկրորդ անձը, որ ըստ Կորիւնին, ինքն է, հետեւաբար, նոյնանում է Լիբերատի Aberiumի հետ. ինչպէս մեկնել Կորիւն եւ Aberium անուանց յարաբերութիւնը, դժուար է գուշակել։ Լիբերատի աղբիւրը Եփեսոսի ժողովի արձանագրութիւններն են եւ Կիւրեղի նամակները — յիշատակարաններ, որոնք գրուած են եղել յունարէն։ Արդ Կորիւն գրուած καυριον նախընթաց και շաղկապի ազդեցութեամբ λεοντιον και κ]αυριον կարող էր գիպուածով կորցնել սկզբի հնչիւնը, dittographie թուելով գրչին։ Հնագրութեան տեսակէտից անհնար չէ նաեւ սկզբի ko- կամ kau-ի իբր αυε- թիւր ընթերցումը։ Լատինն ուրեմն, կարդացել է abe փոխանակ ave < kau-։

Թերեւս առարկուի, որ Կորիւնի ասելով նրա եւ Ղեւոնդի յանձնարարական էր հոգալ հոգեւոր պիտոյից խնդիրն եւ “աստուածատուր գրոց հաստատուն օրինակ„ը, մինչդեռ Լիբերատի յիշատակած դեսպանութիւնը դաւանաբանական լուրջ հարցի համար էր. Կորիւն, եթէ մասնակից էր, չէր կարող անգիտանալ եւ ուրեմն աւելի ստոյգ տեղեկութիւն պիտի սպասէինք նրանից։

Արդեամբ իրաւունք ունինք կասկածելու Կորիւնի ճշմարտախօսութիւնը, աւելի ճիշտ ծած-

կամոութիւնը։ Եզնիկ եւ Յովսէփ Եղեսիայից անցել էին Կ. Պոլիս եւ դեռ այնտեղ էին, երբ եկան Ղեւոնդ եւ Կորիւն։ Ի՞նչ պէտք կար Նոր մարդ ղրկելու հեռաւոր մայրաքաղաքը սուրբ գրքի ստոյգ օրինակը բերելու համար։ Բաւական էր պատուէր ուղարկել Յովսէփին եւ Եզնիկին, մանաւանդ որ ուրիշ նպատակ էլ չունէին սրանք, եթէ ոչ թարգմանական գործունէութիւն։ Ակնյայտնի է, որ Նոր դեսպանութիւնը մի այլ առաքելութիւն պիտի ունեցած լինի։ Եզնիկին յարելը եւ «միաբանութեամբ հոգեւոր պիտոյից զխնդիրն վճարել»ը գուցէ խուլ ակնարկ է եւ ընդհանուր բնորոշում այն յանձնարարութեան, որի մասին խօսել ի լուր աշխարհի անպատեհ է համարում մեր պատմիչը։

Կորիւնը հասարակ կենսագիր չէ, նա եւ եկեղեցական գործիչ է եւ իբր այդպիսին պէտք է իր գրիչը համակերպէր յետ-եփեսոսեան տրամադրութեան։ Հայոց կապերը Ասորիքի հետ այժմ պիտի խորշելի թուէր։ Մենք տեսանք, որ Եփեսոսի ընդդիմադիր ոյժերը կենդրոնացան Անտիոքի Աթոռի շրջանում, գլուխ ունենալով պատրիարքին։ Հայերը բռնել էին որոշակի Կիւրեղի կողմը։ Մելիտինի եպիսկոպոս Ակակը, որ երեւում է եւ ծագումով մօտ էր հայերին, վճռական դեր ունեցաւ եւ այս խնդրում, հաւատ ներշնչելով իր հայրենակիցներին նա նպաստեց մեծապէս Կիւրեղեան հոսանքի յաղթանակին։ Հայ եկեղեցու Եփեսոսեան դաւանանքի հիմը դրուեցաւ, որ այնուհետեւ մնաց անսասան դարերի ընթացքում։ Ոչ միայն Կիւրեղին նրա անմիջական մասնակցութեան, այլ եւ Մելիտինի նշանաւոր եկեղեցականին եւ նրա ջանքերին է պարտական հայ եկեղեցին իր դաւանաբանական խարիսխը։

Թեթեւամտութիւն կը լինէր կարծել Լիբերատի հետ միասին, թէ անգիտութիւն էր պատճառը, որ հայերը դիմեցին Պրոկլին։ Տարաձայնութիւնները անխուսափելի էին նաեւ Հայոց մօտ նոյն Եփեսոսեան վէճերի շուրջը։ Հայաստանի հարաւային մասերը, շնորհիւ խառն ազգաբնակութեան, ունէին նաեւ ասորի եպիսկոպոսներ, այսինքն հպատակւում էին Տիզբոնի եկեղեցուն։ Աղձներից, Մոկաց աշխարհների կողմից յիշւում են ներկայացուցիչներ Ասորի եկեղեցու սկզբնական ժողովներին. այսպէս 420 եւ 424ի գումարումներին ներկայ էին Դանիէլ եպիսկոպոս Աղձնեաց աշխարհից, Ատտիկը՝ Մոկաց եւ նոյն իսկ Հայաստանից՝ ոմն Արտաշահր եպիսկոպոս (Chabot, Synodicon)։ Այս աթոռները վարչապէս կապուած էին այն եկեղեցու հետ, որ յետոյ նեստորականութեան միակ ապաստարանը դարձաւ։ Սրանց ազդեցութիւնը բաւական էր, որ ունէր որոշ տրամադրութիւն ընդդէմ Եփեսոսի։ Թւում է, որ կար եւ ուրիշ հանգամանք՝ նոյն տրամադրութիւնը զօրացնելու համար։

Ռաբուլ եւ Ակակ, Լիբերատի ասելով, զգուշացնում էին հայ եպիսկոպոսներին, որ չընդունեն Թէոդորի գրուածները։ Ի՞նչ գրուածների մասին է խօսքը։ Կորիւնը հաստատում է, որ իրաւ Թէոդորի «գիրք սուտապատում բերեալ երեւեցան Հայաստան աշխարհի»։

Երբ Նեստորի գրքերը արգելուեցան կայսերական հրամանով imperiali lege prohibitum, ըստ նոյն Լատին պատմիչի, նրա հետեւորդները սկսեցին տարածել Թէոդորի եւ Դիոդորի գրուածները, թարգմանելով ասորի, հայ եւ պարսիկ լեզուներով։ Կայսերական օրէնքը հրատարակուեցաւ ի հիւպատոսութեան Թէոդոսի XV եւ Վալենտիանի IV data III non. august. ըստ cod. Theod. եւ III calend. august. ըստ cod. Just. որ է 435, 30 Յուլիս. Պրոկլի թուղթը հայերին կրում է նոյն տարեթիւը 435 (consul. Theod. XV et Vol. IV)։ Ենթադրենք, որ պատրիարքական թուղթը նոյն տարուայ վերջին ամսին է ղրկուած։ Օգոստոսից—Դեկտեմբեր, քանի մի ամսուայ ընթացքում անհնար էր թարգմանել Թէոդորի գրքերը, ղրկել հայերին, որպէս զի այդ հետեւանքով Ռաբուլ եւ Ակակ գրով զգուշացնէին աղանդաւոր գրքերից, եւ յետոյ հայերը ժողով գումարէին եւ դիմէին Պրոկլին եւ պատասխան ստանային։

Պարզ է, որ խնդիրը նեստորականների նորաթարգման գրքերի մասին չէ։ Պէտք է ենթադրել, որ Թէոդորի գրուածները յայտնի էին հայերին մինչեւ Եփեսոսի վէճերը, եւ յայտնի էին այնպիսի պայմաններում, որ նպաստաւոր էին նրա հեղինակութեան եւ անհանգստացուցիչ Եփեսոսեան հաւատի պաշտպանների համար, որպիսիք էին Ռաբուլ եւ Ակակ։

Սրդ ով, եթէ ոչ Ռաբուլ եւ Ակակ, պէտք է գիտենային, որ Թէոդորը գրագրութիւն է ունեցել հայ լուսաւորութեան հօր հռչակաւոր Մաշթոցի հետ։ Թէոդորը մեռած է 428ին եւ եպիսկոպոս էր 392 թուից, նա ժամանակակից է բառի բուն մտքով Մաշթոցին։ Ազգային գիր եւ գրականութիւն ստեղծելու մեծ մտքով յափշտակուած հայ վարդապետը, որ իր երազների համար շրջել էր Մելիտին, Ամիդ, Եդե-

սիա, Սամոսատ, այցելել ծանօթացել էր եւ Ակակին, Բաբուլին, միւս Ակակին, Մելիտինի եպիսկոպոսի, այլ եւ Սամոսատի եպիսկոպոսին, մի խօսքով Հայաստանի սահմանակից նշանաւոր հոգեւոր գործիչներին, նա չէր կարող զանց առնել նոյն շրջանի ամէնից հեղինակաւոր եւ գիտնական եկեղեցական հօր Թէոդորոս Մամուեստացուն։ Իր ճոխ գիտութեան համար նա արժանացել էր Polyhistor = բազմավէպ հնչման։ Անակնունելի չէ բնաւ, որ Թէոդորի ծանօթ հայազն եպիսկոպոս Մաստուբիոսը լինի Մաշթոցը։

Մի բան, սակայն, վրիպելու չէ ուշադրութիւնից։ Թէոդորը գրել է Մաստուբիոսին իր քահանայութեան ժամանակ. Θεοδώρου πρεσβυτέρος է ասուած խորագրում։ Բարեբախտաբար Թէոդորի կեանքը բաւականին ծանօթ է։ Թէոդորիտի ասելով (Եկ. Պատմ. Ե, 39), Թէոդոր մեռել է 78 տարեկան հասակում, եւ եպիսկոպոս էր 36 տարի, այն է սկսած 392ից։ Իսկ քահանայ է ձեռնադրուած 383ին. 392ին Դիոդորի աջակցութեամբ ստանում է Կիլիկիայի Մամուեստա քաղաքի եպիսկոպոսական աթոռը։ Այսպիսով նրա երէցութիւնը ընկնում է 383—392 տարեշրջանը։ Հետեւապէս այս տասնամեայ միջոցին պէտք է գրած լինի Մաշթոցին։

Թէոդորի աշակերտն էր Ռուփին(ոս) անունով քահանայ որ 399ին Հռոմ մեկնեց եւ այս տեղ ծանօթանալով Պելագիոս քահանային նրա միջոցով Պելագիական կոչուած վարդապետութեան իսկական հիմնադիրն եղաւ։ Պելագիականները շեշտում էին իրենց հոգեւոր կապը Թէոդորի հետ։

Մեզ թւում է, որ այս Ռուփինը ուրիշ անձն չէ, եթէ ոչ այն գրիչ Հռուփանոսը, որը յիշւում է գրերի գիւտի պատմութեան մէջ։ Եթէ Թէոդորի աշակերտը իբրեւ ասոկ գրիչ մասնակցում է գիւտին, հարկաւ, նրա ուսուցիչն աւելի շօշափելի նպաստ պիտի բերած լինէր նոյն խնդրին։

Պարիս։ ՊՐՈՖ. Ն. ԱԴՈՆՑ

(Շարունակելի։)



## ՆԵՐՍԷՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ ՆԵՐԲՈՂԵԱՆ Ի ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

(Շարունակութիւն։)

Շարժէին եւ ձեռագործքն ի մտանելն նոցա, յերկիր կործանէին կուռքն ի տեղի, ընդ որ անցանէր Յովսէփ Մարեմաւ եւ դիւթքն [յ]Եգիպտոսի աղաղակէին թէ Աստուածն ամենայնի նկուն արարեալ կործանէ զաստուածս [յ]Եգիպտոսի։ Իսկ յետ կատարելոյ նախաճառութեանն Եսայեայ, այլ մարգարէ պահանջէր զլրումն իւրով պատգամաւն ասելով՝ Արի Տէր, ել յԵգիպտոսէ եւ եկ յերկիրն Իսրայէլի, զի լցցի առ յինէն ասացեալն թէ յԵգիպտոսէ կոչեցից զորդի իմ. եւ եկեալ բնակէր ի Նազարէթ, առ ի յարդարացուցանել զպատգամ ծառայիցն իւրոց մարգարէից, ըստ որում աղաղակէ թէ Նազօրեցի կոչեսցի։ Եւ երթայր զարգացեալ հասակաւ Բանն Աստուծոյ ընդ մարմնաւոր ծնօղացն յԵրուսաղէմ ի լրումն կէտի օրինացն իւրոց կանոնի, քանզի էր նոցա հնազանդ. այն որ ասաց Պատուեա զհայր քո եւ զմայր, ի թիւ երկոտասան ամին, ժամանեալ յԵրուսաղէմ, նստէր ընդ վարդապետս օրինացն՝ լսէր եւ պատասխանէր։ Ով սքանչելի մանուկ, թուոյ աւուրց կարօտանաս առ ի խօսել իմաստութեամբ, որ նախ քան զամենայն բլուրս ծնար։ Ծնար ի ծոց Աստուծոյ զօրութիւն նորա եւ իմաստութիւն։ Ջիմն, ասէ, եկի[1] ուղղել զսահման կանոնի, զոր եդի մարմնաւոր բնութեանս եւ ոչ խրամատեալ։ Իսկ մինչդեռ նա ապացոյց իջմանն ի դժոխս երեքօրեայ ժամանակեայ յապաղէր ի տաճարն, մայրն որ յայնժամ սրտակոտոր էր խոցելոց. յայնժամ ի նմին յարացոյց ջերմաջերմն սիրով խնդրէր ընդ ուղեկիցսն զմանուկն Յիսուս։ Մի արդեօք, ասէ, Արքեղայոսն ծանուցեալ զհօրն կամս լցեալ, որով եւ զսա ընդ Բեթլեհեմի մանկունսն խողխողեաց։ Դարձաւ փութանակի յԵրուսաղէմ եւ գտեալ (զ)նա կենդանի զիրկս արկանէր ողջագուրէր ի խնդութենէն զարտասուքսն արտաքս ցնդէր։ Իւրաքանչիւր ոք ի զգայարանացն սրտաբորբոք գթով համբուրէր եւ ասէր. Որդեակ, զի՞նչ գործ գործեցեր ընդ մեզ, վասն զքեզ թագուցանելոյ յԵգիպտոս փախեաք, ի քո կենացդ երկիւղէ զսեփհական հայրենիսն թողեալ ի Նազարէթ պանդխտեցաք, դեռ եւս մանկանց Բեթղեհեմի մարքն, որոց որդեակքն քո աղագաւ սպանան, զարհուրեցուցանեն

[1] Մեր բնագրին մէջ այս երեք բառերը չկան. դրինք Վենետիկի թ. 1358 ձեռագրէն։

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

---

## ԱՆԾԱՆՕԹ ԷՋԵՐ ՄԱՇԹՈՑԻ ԵՒ ՆՐԱ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻ ԿԵԱՆՔԻՑ ԸՍՏ ՕՏԱՐ ԱՂԲԻՒՐՆԵՐԻ

*(Շարունակութիւն եւ վերջ:)*

Թէոդորի քահանայութիւնը անցել է Անտիոքում, իր ծննդավայրում։ Նրա դասընկերն էր եւ մտերիմը հռչակաւոր Յովհան Ոսկեբերանը, որ քահանայ էր միեւնոյն Անտիոքում։ Խորենացու յիշած գանգատը յոյների կողմից, թէ ինչու Հայերը Ոսկեբերանին չեն դիմել, գուցէ, եւ ցոլանքէ այն իրողութեան, որ Թէոդորի եւ Ոսկեբերանի շրջանումն է, որ Մաշթոց յաջողել է հայ գրերի գիւտը եւ հետագայում, ոմանք Թէոդորին էին վերագրում, ուրիշները՝ Ոսկեբերանին այդ մեծ շնորհը։

Սրանով ընդգծւում է գրերի գիւտի համար որոշ եւ դրական տարեթիւ՝ 383—392 տարիների տասնամեայ միջոցը։ Տեղը չէ կանգ առնել մեր այս ենթադրութեան վերայ եւ նրա հաւանականութեան հիմերը մէջ բերել։ Հայ գրերի ծագումը մութ է եւ ոչ ոք յանկարծակի չպիտի գայ մեր ենթադրութեան հանդէպ։

Մեր անմիջական նպատակի համար բաւական է նկատել, որ Թէոդորի սկզբնական ծանօթութիւնը Մաշթոցի հետ կարող էր տեղի ունեցած լինել վերջինիս տքուն որոնումների ճանապարհի վերայ։

Թէոդորը յայտնի էր իր բեղմնաւոր գրչով։ Մի շարք գրուածներ, ուղղուած են եղել հերձուածների դէմ. Որոգին, Արիոս, Եւնոմ, Մակեդոն, Ապողինար, հրեայ եւ հեթանոս ուսմունքներն բոլորն էլ առիթ են տուել նրան բանակռուի ասպարէզ իջնելու։

Այս տեսակ գրութեանց կարգին է պատկանում եւ այն, որ ուղղուած է եղել Մաստուբիոս հայ քորեպիսկոպոսին։ Երկու ճառը նուիրուած է եղել հաւատոյ խնդիրներին τὰ περὶ τῆς εὐσεβοῦς πίστεως։ Նեստորական ոգի է շնչելիս եղել մանաւանդ վերջին ճառը, ինչպէս շեշտում է Փոտը։

Նոյն Փոտը ծանօթ է եւ մի ուրիշ գրութեան, ուր Թէոդորը τὸ Νεστορίου δόγμα ἐι καὶ πρὸ Νεστορίου ὑπῆρχεν ὑπερενγόμενος, այսինքն "Նեստորի դաւանանքն էր որդեգրում, թէեւ նրանից առաջ էր ապրել"[1]։

Եկեղեցու Հայերը իրաւունք ունէին կասկածելու, որ Հայերը կարող էին վարակուած լինել Թէոդոր-Նեստորեան խմորով։

Թէոդորը լաւ ծանօթ էր Ռաբուլին։ Սկզբում նիզակակից էին։ Մամուեստայի եպիսկոպոսը թէեւ մեռած, մասնակից էր Եփեսոսի վէճերին։ Ռաբուլը լքեց Թէոդորականների դասը 431 ի ձմեռը եւ անցաւ հակառակ բանակը։ Նա էր, որ մերկացրեց Թէոդորի այսպէս ասած նեստորականութիւնը։

Բնական էր սպասել, որ Ռաբուլը պէտք է յորդորէր եւ Հայերին խորշել Թէոդորից եւ նրա գրքերից։ Անտարակոյս գիտէր, որ անգոսնելի այրը, որ տակաւին երէկ խոշոր դէմք էր, որոշ հռչակ եւ հեղինակութիւն ունի Հայերի մօտ, Մաշթոցի հետ ունեցած գրութեան հետեւանքով եւ նրա դեռ թարմ յիշողութեամբ։

Յաջորդ անցքերը ցոյց տուին, որ իրօք դիւրին չէր վարկաբեկ անել Թէոդորին։ Հայ եպիսկոպոսները փոխանակ խոնարհելու տիեզերական ժողովի որոշման առաջ, հարկաւոր են համարում հաւաքական խորհրդածութեամբ մարդ ուղարկել Կ. Պոլիս եւ տեղը իրազեկ լինել ճշմարտութեան։

Պրոկլ իր պատասխանում քաշւում է տալ Թէոդորի անունը. Նրա փափկանկատ լռութիւնը, որ շեշտում է հարցի ցաւոտ կողմը, հարկաւ կրքերը մեղմացնելու համար էր։ Հայ տարաձայնութեանց եւ վէճերի վախճանը մօտէն յայտնի չէ։ Գիտենք միայն, շնորհիւ նոյն Լիբերատի, որ 2 թէ 3 հայ վարդապետ կատաղի քարոզ սկսեցին ընդդէմ Թէոդորի։ Նրանք շրջում էին ամենուրեք Թէոդորի գրքերից քաղուածներ ձեռքերնին եւ պահանջում էին դատապարտութիւն։ Լիբերատը նրանց անուանում է Ապողինարի հետեւորդներ, սակայն լատին եկեղեցականի բերանում եւ Ե. ժողովից յետոյ, այդ համազօր է ջերմ կիւրեղականի։ Մոլեռանդ հակաթէոդորական վարդապետները, բացայայտ է, որ այն հոսանքի ներկայացուցիչներն են, որ յաղթող է հանդիսացել Հայաստանում։

Ոչ միայն Պրոկլի, այլ եւ Վասիլ սարկաւագի թուղթն ընդդէմ Թէոդորի, ուղղուած Հայերին, աննշանակ չեն անցել հայ վէճերի հետեւանքի համար։

---

1 Photii Bib. 38. *Θεοδώρου 'Αντιοχέως "ἑρμηνεία τῆς κτίσεως"*, P. G. 103, col. 70.

Եփեսոսեան դաւանանքը յաղթանակեց։ Այս առթիւ հայերը վերստին պատգամաւորութիւն են ուղարկում մայրաքաղաք առանձին յանձնարարականով Պրոկլ պատրիարքին, ինչպէս եւ գրում են Աղեքսանդրիոյ Կիւրեղ եպիսկոպոսին։ Լիբերատի թերի հաղորդագրութիւնը այս անցքերի մասին լրացնում է մի կարեւոր յիշատակարան, որ դիպուածով պահուել է Ե. տիեզերական ժողովի արձանագրութիւնների մէջ։

Այս ժողովի հինգերորդ նիստում կարդում են Կիւրեղի եւ Թէոդորի քաղուածներին կից եւ մի հատուած՝ Ex libellis porrectis a presbyteris et diaconis qui transmissi sunt ab episcopis et clericis et monachis et caeteris Magnae Armeniae et Persidis et aliis gentibus (Mansi IX, col. 240).

Յանձնարարական նամակի հետ պատգամաւորութիւնն ունէր impia capitula Թէոդորի, որ ներկայացրին Պրոկլին, ինչպէս պատմւում է նոյն յիշատակարանում. “porrecta sunt autem et impia capitula ex Theodori codicibus sanctae memoriae Proclu ab Armeniis„. Խօսքն այն քաղուածոյքի մասին է, որը յիշում է եւ Լիբերատը excerpta capitula կոչելով։

Migne արտատպելով յիշեալ վաւերագիրը Mansiի IX հատորից զետեղել է Պրոկլի առ Հայս թղթից առաջ (P. G. 65, col. 855), ինչպէս երեւում է շփոթելով երկրորդ դեսպանութեան թուղթը առաջին դեսպանութեան թղթի հետ։ Տեսանք, որ Ղեւոնդի եւ Աբերիոն-Կորիւնի դեսպանութիւնը եւս ունէր libellum պատրիարք Պրոկլին ներկայացնելու։ Այդ թուղթը մեզ չի հասել։ Ե. տիեզերական ժողովի արձանագրութիւնների մէջ պահուած յիշատակարանը պատկանում է երկրորդ դեսպանութեան։ Արդարեւ Լիբերատի մի կոչումը, որ գտնում ենք այս յիշատակարանում, հաստատում է մեր կարծիքը, որ կարեւոր է անցքերի յաջորդականութիւնը ըմբռնելու համար։

Լիբերատ վկայում է, որ 2—3 հայ վարդապետները շրջելով ամբողջ արեւելքը պահանջում էին, որ Նեստորամիտ հայրերը, նման Թէոդորի եւ միւսների, նզովուին, եւ բերում է նրանց խօսքը։

“Quia si Nestorius iuste damnatus est, damnentur et ista, dicebant, cum suis auctoribus„. Այս կոչումը նայում է ex libellis porrectis հատուածի հետեւեալ տողերին։

“Et sicut domino placuit condemnari manifeste et nominatim in Epheso ab universali Synodo Sacrilegium Nestorium, si per vos etiam antea condemnatum sine nomine, sacrilegiorem in varia impietate Theodorum nominatim condemnari et eos qui secundum impiisimam eius expositionem hactenus in Syria et Cilicia sapiant et docent„.

Լիբերատը, կրկնում ենք, ի նկատի ունի այս տողերը։ Սորագծած բառերը, որ մի պարզ ակնարկ է Պրոկլի հայոց գրած դաւանաբանական թղթին, ուր հերքւում է Թէոդորեան տեսութիւնները առանց անունը տալու, ինքն ըստ ինքեան բաւական են հաստատելու որ յիշեալ թուղթը ծագում է երկրորդ դեսպանութիւնից։ Կիւրեղ-Թէոդորեան վէճերը վերջացնելուց յետոյ հայերը լայն քարոզչութիւն են սկսում Եփեսոսեան դաւանանքի օգտին. եւ Լիբերատը չի չափազանցնում, երբ ասում է, որ հայ վարդապետները աղմկում են ամբողջ արեւելքը։ Նախ քան Պոլիս գնալը հայերը դիմել էին անձամբ թէ գրով Աղեքսանդրիոյ Կիւրեղ եպիսկոպոսին, ինչպէս վկայում են իրենք։

“Sicut in nostris contra Theodorum et scripta eius libellis ad Alexandrinum episcopum Cyrillum diximus et in his quae ad vestram dicimus beatitudinem.„

Հայերը ինչպէս եւ միւս կողմնակիցները Եփեսոսի ժողովի իրենց հակաթէոդորեան քարոզով այնքան հեռու էին գնացել, որ նոյն իսկ նրան պարագլուխը, Կիւրեղ եպիսկոպոսը ստիպուած եղաւ սաստել նրանց եւ ծայրայեղութեան առաջն առնել։ Անտիոքի Յովհաննէս պատրիարքին ուղղած նամակում բացարձակ ընդդիմանում է, որ Թէոդորը եւ կամ որեւէ ուրիշը, որ մեռած է անէծքի եւ կամ բանադրանքի առարկայ դառնայ. (“neque autem de Theodoro, neque de alio quoquam qui iam defuncti sunt, scripsi tibi aut ut anathematizetur aut ut abdicetur„. P. G. 65, col. 879.)

Յետ-Եփեսոսեան իրադարձութիւններին հայերի այնքան սերտ գործակցութիւնն ապացուցանում է, որ իրենց հայրենի շրջանում խնդիրը անցել է կուսակցական պայքարի բովից։ Պէտք է կարծել, որ ընդդիմադիր ոյժերն աննշան չեն եղել եւ յաղթանակ դիւրութեամբ չէ տրուած։ Այլապէս դժուար թէ կարիք զգացուէր դիմել օտար եկեղեցիներին եւ միահամուռ գործունէութեամբ տապալել ընդմիշտ ոսոխին եւ ամրապնդել յաղթանակը։

Լիբերատի ցուցումը, որ քարոզիչ վարդա-

պետները "երկու թէ երեք", duo vel tres հոգի էին՝ թեւագրում է մի միտք. արդեօք եւ այս անգամ դեսպանութիւնը բաղկացած չէր նոյն "երկու թէ երեք" անձերից, որի մասին խօսում է Կորիւնը: Տեսանք Պոլիս ուղարկուեցան Ղեւոնդ եւ ինքը Կորիւնը եւ սրանց այնտեղ յարեց նաեւ Եզնիկը, որ Եդեսիայից մեկնել էր Կ. Պոլիս Յովսէփի ընկերակցութեամբ: Ուշագրաւ է, որ Ղեւոնդն ու Կորիւնը "մատուցեալ յարէին յԵզնիկն", պատմիչը չէ յիշում այստեղ Յովսէփին:

Թւում է, որ երկուսը պատուէր ունէին գործել Եզնիկի հետ: Չի կարելի չհամեմատել այս երկու երեք հոգուն Լիբերատի 2 կամ 3 անձերի հետ, որ այնքան ճշտօրէն է որոշում դեսպանութեան կազմը:

Եփեսոսեան անցուդարձի վերայ կանգ առանք ոչ միայն այն պատճառով, որ մի նոր եւ թանկագին էջ է բացւում հայ եկեղեցու պատմութեան մէջ նրա դաւանաբանական աւանդի ծագման տեսակէտից, այլ եւ որ այդ անցուդարձը նոր լոյս են ցօղում Մաշթոցի եւ նրա կեանքի վերայ: 420—435 թուերին Մաշթոցի այցը Ամիդ, Եդեսիա, Սամոսատ եւ Մելիտինէ որեւէ աղերս չունէին եւ չեն կարող ունենալ գրերի գիւտի հետ: Մանկութիւնից հելլէն դպրութեան վարժ, նա պէտք չունէր նաեւ կրթութեան: Եւ ոչ թարգմանչական գործը գոնէ նրա համար առանձին ճանապարհորդութեան շարժառիթ կարող է նկատուել: Եթէ գրերի առթիւ նա այցելել է յիշեալ քաղաքները եւ մանաւանդ Եդեսիան, ժամանակակից լուսաւորութեան կենդրոնը, յայտնի իր աստուածաբանական բարձր դպրոցով, յամենայն դէպս այցը եղել է 420 թուականից շատ առաջ. 406 գրերը արդէն պատրաստ էին եւ նրանց հոգսը վերջացած: Հաւանական է, որ գրի որոնումների շրջանին նա ծանօթացել է ոչ միայն Ռաբուլի, այլ եւ աւելի հռչակաւոր Թէոդոր Մամուեստացու հետ: Անձնական ծանօթութեան հետեւանքով է գրուած եւ Թէոդորի մեզ հետաքրքրող գործը, Մաշթոցի, *Μαστούβιος*ի հասցէին: Գրութիւնը տեղի ունեցած պիտի լինի մինչեւ 406 թիւը, հաւանօրէն, Թէոդորի քահանայութեան առենով, ինչպէս յիշեցինք:

Հաւանական է, որ Մաշթոցի այցը սուրբ եպիսկոպոսներին, որի մասին պատմում է Կորիւն, կապ ունի հաւատոյ խնդրի հետ եւ մօտ է 430 թուականներին: Աչքի է ընկնում մի հանգամանք: Եդեսիայից Մաշթոց իջնում է Սամոսատ, "յորում մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն եւ յեկեղեցւոյն մեծարեալ լինէր": Զարմանալի է, որ եպիսկոպոսի անունը չի տալիս, մինչդեռ յիշում է Ամիդի, Եդեսիայի եւ Մելիտինի եպիսկոպոսներին յանուանէ:

Սամոսատի գրչի անունը, որ է Հռոփանոս, նմանապէս արձանագրել է Կորիւն: Սամոսատի եպիսկոպոսական աթոռի վերայ նստած էր այն ժամանակ Անդրէաս: Սա խառն էր Եփեսոսեան աղմուկներին եւ գտնւում էր Յովհաննէս Անտիոքացու բանակում: Աննշանն ոմն չէր նեստորականների շարքերում: Համարւում էր թշնամի Ռաբուլին, վերջինիս դասալքումից յետոյ. եւ պատմում են, որ յանդիմանական նամակ է գրել Ռաբուլին նրա՝ Թէոդորիտի, կանոնաւոր նեստորականի եւ Կիւրեղի քաջանուն ախոյեանի դէմ ելնելուն համար:

Արդեօ՞ք դաւանաբանական նկատումները չեն, որ ծածկել են Սամոսատի եպիսկոպոսի անունը: Ռաբուլ եւ Ակակ Կիւրեղեան հաւատի սիւներ էին, եւ որքան ցանկալի է սրանց ծանօթութիւնը, նոյնքան խորշելի պիտի համարուէր Անդրէաս Սամոսացին, իբր նեստորամիտ հերձուածող: Հնարաւոր է, ուրեմն, որ Անդրէասի անունը կամաւ է թողած:

Կորիւնը գրել է Մաշթոցի վարքը նրա մահից յետոյ որ դիպաւ Յազկերտի ըստ Ղազար Փարպեցու՝ երկրորդ տարին, մեհեկի 13, որ է 439 Մարտի 17 կամ 440 Մարտի 18: Գրել է Յովսէփի պատուէրով որ նահատակուեց նոյն Յազկերտի 16 տարին, հրոտից 25, այն է 454, Յուլիս 25: Եւ որովհետեւ Կորիւնը չի յիշում Ե. դարի շարժումներին, հաւանական է, որ մեռած է մինչեւ Արտաշատի ժողովը, Յազկերտի երկոտասաներորդ տարին. 439—440: Սորանից հիմնում է, որ Մաշթոցի կեանքը գրած պիտի լինի 440—450 տասնամեակի ընթացքում:

Սակայն չի կարելի անուշադիր թողնել, որ Կորիւն Սիւնեաց Վասակ իշխանին գովելով, մեծարում է նրան այնպիսի մակդիրով, որ կասկածանքի դուռ է բաց անում: Սիսական Վասակը ոչ միայն "խորհրդական եւ հանճարեղ" այլ եւ "յառաջիմաց շնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ": Արդեօ՞ք ակնարկ չէ հետագայ եղելութիւնների եւ Վասակի վարմունքի վրայ: Պէտք չէ՞ ենթադրել, որ Կորիւն համախոհ է եղել վատաբախտ մարզպանին եւ նրա կուսակցութեան եւ ուստի անհաղորդ է մնացել շարժման: Վասակին յառաջիմացութեան շնորհ վերագրելով հասկացնել է տալիս, որ ապստամբութեան ծանր հետեւանքները հեռատեսօրէն

կշռելով, հակառակ է հանդիսացել շարժման։ Այս դէպքում Կորիւնի նկատողութիւնը կը հնչի իբր խուլ ղօղանջ արդարութեան ձայնի, այն ձայնին, որ այնպէս խեղդել են Մամիկոնեան պատմիչները, Եղիշէ եւ Ղազար։

Կորիւնը գիտէ Վահան Ամատունուն հազարապետի պաշտօնում, գիտէ եւ նրա մահը. «յանկարծահաս կենաց ամենցուն լինէր»։ Եղիշէն պատմում է, ի թիւս այն անցքերի, որ տեղի ունեցան Յազկերտի ԺԲ. տարին նաեւ հազարապետի պաշտօնանկ լինելը. «հանեալ ի գործոյն փոխանակ նորա պարսիկ ած յաշխարհն»։ Եթէ խօսքը նոյն Վահանի մասին է, նշանակում է, նրա մահը պատահել է 439—440 թ. յետոյ։ Հետեւաբար եւ Կորիւնի գործը ընկնում է նոյն թուից յետոյ։ Այլեւ Կորիւնը յիշում է հայրապետական աթոռի տեղապահներ, Սահակի եւ Մաշտոցի վախճանից յետոյ, Յովսէփին եւ «եւ այլ աշակերտ Յովհան անուն, այր իսկ սուրբ վարդապետասէր եւ ճշմարտապատում»։ Սա շատ չարչարանքների է ենթարկւում Տիզբոն քաղաքում հաւատի համար եւ արժանանում է խոստովանող կոչման. եւ յետոյ «ի նոյն վերակացութիւն դառնայր յերկիրն Հայոց»։

Ո՞վ է այս Յովհանը, որ անծանօթ է Եղիշէին եւ Ղազարին։ Յայտնի է Աբրահամ խոստովանողը, որ տասներկու տարւոյ գերութիւնից յետոյ, ազատ արձակուեցաւ աքսորից։ Չենք ուզում թէական մեկնութիւնների մէջ մտնել[1]։ Ով որ էլ լինի անծանօթ Յովհանը, նրա դարձը չի կարելի յառաջ դնել քան Աբրահամի եւ նախարարների արձակումը Պերոզի հինգերորդ տարին այսինքն 462 թ. կան նշաններ, ուրեմն, որ Կորիւնը թւականել է Ե. դարի երկրորդ կէսը։

Ռաբուլի մահից յետոյ Եդեսիայում զօրանում է նեստորականների ազդեցութիւնը։ Նրա յաջորդ Իբասի օրով։ Սորա մահը 457 թ. յառաջ է բերում զօրեղ ընդդիմութիւն եւ բոլոր նեստորական վարդապետները հալածւում են Եդեսիայից Պարսից հողը։ Վերջնական հարուածը դրւում է նրանց Եդեսիայի հռչակաւոր, պարսկական կոչուած դպրոցի, նեստորականութեան այդ դղեակի փակմամբ 489 թ.։ Որքան թուլանում են յունական հողերում Նեստորի կողմնակիցները, այնքան զօրանում են նրանք պարսից իշխանութեան տակ, վայելելով մանաւանդ Պերոզ թագաւորի հովանաւորութիւնը (457—484)։

Եռանդուն Բարծուման կարողանում է ներշնչել Պերոզին այն միտքը, որ քրիստոնեաները երբեք սրտով չեն կպչի պարսից իշխանութեան եւ աչք չեն դարձնի կայսերներից, մինչեւ որ դաւանանքի խրամատը չանջրպետէ նրանց։ Պէտք է, ուրեմն յառաջ տանել, խրախուսել նեստորականութիւնը այլադաւան քրիստոնեաներին բռնի ոյժով պարտաւորել յարել նեստորական, իբր պետական եկեղեցու։

Պերոզի յաջորդը Վաղարշ 484—488, ինչպէս Կաւատ, սկզբներում (488—496). բարեկամ լինելով կայսերներին դադարեցրին հալածանքը ոչ նեստորական քրիստոնեաների։ Սրանց համար նպաստաւոր պայմաններ ստեղծուեցան մանաւանդ Զենոն եւ Անաստաս հակաքաղկեդոնական կայսրների օրով։

Դժբախտաբար, Ե. դարի երկրորդ կէսի դաւանաբանական ելեւէջների համապատասխան արձագանգն հայ եկեղեցական կեանքում թւում է թէ անհետ կորած է։ Պետական իշխանութեան ճնշման տակ թերեւս նեստորականութիւնն եւս աջող օրեր ունեցած լինի։ Բաբգէն կաթուղիկոսին ապաւինող ասորի եկեղեցականները հաւատացնում էին, որ նեստորականները լուրեր են տարածում, թէ հայերը նրանց հաւատակից են. «եւ այդպէս ասեն, թէ հոռոմք, եւ հայք եւ վիրք եւ աղուանք զնոյն կանոն եւ եւ զհաւատ ունին զոր մեքս ունիմք» (Գիրք թղթոց, էջ 46)։

Այս խօսքերին, որ քարոզչական նպատակով չափազանցրած են, հարկաւ հաւատ չի կարելի ընծայել։ Բայց եւ չի կարելի ժխտել, որ ճշմարտութեան նշոյլ կայ այն մտքով, որ մասնակի կղզիներ են եղել։ Յիրաւի, ոչ միայն 424 թուի, այլ եւ 486 թուի նեստորական ժողովներին ներկայ եկեղեցականների թւում պատահում են ներկայացուցիչներ եւ Հայաստանից. առաջնում՝ ոմն Արտաշահր եպիսկոպոս, երկրորդում՝ Մովսէս եպիսկոպոս (Synodicon orientale)։ Նեստորականների ներկայութիւնը, քարոզը, մրցումն ու նուաճումներն առաւել եւս պիտի լարէին տեղական ոյժերը նոցա ընդդիմութեանը եւ ամրակուէին այն տրամադրութիւնը, որ անցել էր Եփեսոսեան մաքառումների հնոցով։

Կորիւնը հաւատարիմ է այդ տրամադրութեան. նրա գործը հակասորական կնիք, նես-

---

1 Այս հարցի քննութեան համար յիշելու է, որ «Նախադրութիւն ներբողենի խաչին» անվաւեր գրութեան համաձայն, Վարդանայ պատերազմից յետոյ Հայրապետութիւնը բաժանւում է երկուսի. «Յոհան Մանդակունի ի պարսից կողման կաթողիկոս եւ Գիւտ ի կողմանս յունաց»։

տորական խորշանք ունի։ Ասորական նպաստը գրերի գիւտում դիտմամբ աքօղուած է նրա գրչի տակ։ Սուրբ գրքի թարգմանութիւնը համարում է յունական բնագրից թէ նախնականը եւ թէ ծրբագրածը Եզնիկի բերած յոյն վաւեր օրինակի վերայ։

Ինչպէս եւ մեկնելու լինենք Կորիւնի դիրքը եւ յարակից խնդիրները, մի բան է հաստատուն, որ հայ եկեղեցու դաւանաբանութեան կիւրեղեան խարիսխը աւանդ է Եփեսոսի ժողովից։ Մաշթոց եւ նրա աշակերտները Ղեւոնդ եւ Թէաբար Կորիւն երեւան գալով ընդհանուր եկեղեցական ասպարիզում անմիջական մասնակցութիւն են ունեցել ճշմարտութեան որոնումներին եւ հիմնարկել են հայ դաւանաբանական շէնքը։ Սերունդների միշտ արթուն զգացումը, միանգամ ստացած ժառանգութիւնը պահելու անդրդուելի կորովը բացատրելու է եւ նորանով, որ նա սրբագործուած է եղել հայ լուսաւորութեան ամոլների սրբազան աջով։

Պարիս, 20 Մարտ 1925։ ՊՐՈՖ. Ն. ԱԴՈՆՑ

(Վերջ։)



# ՅՈՒՆԱԲԱՆ ԴՊՐՈՑԸ

ԵՒ

# ՆՐԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ

—

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

(Շարունակութիւն։)

§ 10. Էջմիածնի մատենադարանի թիւ 1939 ձեռագրում գտնուած Ստորոգութեանց նոր մեկնութիւնները։ — Վերոյիշեալ աշխատութիւնս հրատարակելուց յետոյ, Էջմիածնի մատենադարանի հնագոյն ձեռագիրներն ուսումնասիրելիս՝ անսպասելի կերպով գտնուեց Արիստոտելի Ստորոգութեանց մի նոր մեկնութիւն, որն անծանօթ ու կարեւոր մի երկ էր յունաբան հնագոյն դպրոցի։

Այդ մեկնութիւնը պահպանուել է Էջմիածնի թիւ 1939 ձեռագրում (= Կարին. Ցուցակ, թ. 1897)։ Նոյն ձեռագիրը պարունակում է նաեւ հետաքրքիր մի հատուած Արիստոտելի Ստորոգութեանց մի այլ մեկնութեան, որը համառօտ մի ճնացորդ է ինչ որ անյայտ հին թարգմանութեան։

Նորագիւտ այդ մեկնութիւնների քննութիւննից երեւաց, որ ընդարձակ մեկնութիւնը թարգմանութիւն է Ստորոգութեանց մեկնութեան յունարէն այն բնագրի, որը հրատարակել էր գերմանացի գիտնական Ադոլֆ Բուսէն, իբրեւ Էլիաս իմաստասիրի աշխատութիւն[1]։ Համառօտ հատուածի յունարէն բնագիրը, որքան ինձ յայտնի է, չկայ Արիստոտելի Ստորոգութեանց տպագիր մեկնութիւնների մէջ, որ հրատարակել է Բեռլինի կայսերական ակադեմիան։

Հայերէն բնագիրը թէ այդ հատուածի եւ թէ Էլիասին վերագրուած Ստորոգութեանց մեկնութեան լոյս է տեսել, ինչպէս վերեւ յիշուեց, 1911 թուին Պետրոգրադում գիտութեանց կայսերական ակադեմիայի հրատարակութեամբ[2]։

Էլիասին վերագրուած այդ մեկնութեան հայերէն թարգմանութեան բնագիրը սկզբից եւ վերջից թերի է, ուստի եւ նրա հայերէն վերնագիրը մնում է անորոշ։ Հայերէն հրատարակութեան մէջ վերնագիրը դրուած է յունարէն տպագրի վերնագրի համաձայն, որը սակայն, ինչպէս կը տեսնենք, ոչ թէ յունարէն ձեռագիրներից է բղխում, այլ ենթադրական մի վերնագիր է, հիմնուած հրատարակչի, Ադոլֆ Բուսէի, բանասիրական հետախուզումների վրայ։

Հայերէն հրատարակութեան առաջաբանում ես արդէն մատնանիշ էի արել, որ Ա. Բուսէի ենթադրութիւնը Ստորոգութեանց մեկնութեան հեղինակի մասին չէ համաձայնում հայ մատենագրութեան մէջ պահպանուած վկայութիւնների հետ, որ, իմ կարծիքով, վերաբերում են հենց նոյն այս մեկնութեան[3]։ Մատենագրական այդ վկայութիւններից եւ Ստորոգութեանց մեկնութեան հայերէն բնագրի քննութիւնից երեւում է, որ Ա. Բուսէի եզրակացութիւնները դժուար է ընդունել, իբրեւ վերջնական ու անվիճելի։ Այդ եզրակացութիւնները, որ հաւանական են համարուած Բիւզանդական մատենագրութեան, ինչպէս եւ փիլիսոփայութեան պատմութեան մէջ, կարօտ են, իմ կարծիքով, վերաքննութեան հայկական տուեալների

[1] Տե՛ս A. Busse, Eliae in Porphyrii Isagogen et Aristotelis Categorias commentaria, Berolini 1900, էջ 108–200։

[2] Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտելի ընծայեալ Էլիասի իմաստասիրի, էջ 1—140 եւ Հատուած ինչ մեկնութեան Ստորոգութեանցն Արիստոտելի, էջ 141—149։

[3] Տե՛ս Մեկնութիւն Ստորոգութեանցն, էջ II եւ III։